




Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Կ. ՀՈԳՏԱՆՅԱՆ

Շատ եմ սիրում հեքիաթներ լսել: Մայրիկս ասում է, որ ես մեծ եմ և մեծերը վիշապների մասին հեքիաթներ չեն լսում: Դա ինձ համար կարևոր չէ։ Ես դարձյալ լսում եմ վիշապների հեքիաթները։ Մի անգամ էլ փոքր եղբայրս եկավ ու ասաց.

— Հայրիկը քեզ է կանչում։

— Սպասիր, թող լսեմ, — նեղացած ասացի ես։

— Դու հասկանու՞մ ես...հայրիկը...

— Հասկանում եմ, դե կորի՛ր,—ցավեցնելու ստինան բոթեցի ես նրան։

Նա ճչաց, և սարսափելի հեքիաթը կանգ առավ։

— Շարունակի՛ր, — ասացի ես մեծ եղբորս՝ Վահրամին:

— Հայրիկը քեզ կանչում է, գնա՛, — ասաց Վահրամը:

— Պատմի՛ր, — համառեցի ես։

— Չե՛մ շարունակի, հայրիկը քեզ կանչում է, իսկ դու, ավելի լավ է, գնաս ու ինձ չկարգադրես։ Ես մեծ եմ։ Դու ինձ պետք է լսես։ Ես ուզենամ՝ կպատմեմ, ուզենամ՝ չեմ պատմի. և հետո, ուշ է:

— Ո՛չ, դու անպայման կուզենաս պատմել։ Իսկ հայրիկը ինձ է կանչում։ Քո գործը չէ, դու պատմի՛ր, — ասացի ես։ Ես կուզենայի խնդրել, բայց մեծ եղբայրս՝ Վահրամը շատ համառ է... Նրան բան չես հասկացնի, ինչ ուզենա՝ կանի: Հայրիկս նրան ոչինչ չի ասում։ Նա սարսափելի հեքիաթներ է պատմում։ Երբ ուզենա, ինչպես ուզենա, շուռ կտա հեքիաթը։ Ա՛յ, օրինակ, մի անգամ իշխանը հազիվ կարողացավ սպանել վիշապին։ Իսկ մի ուրիշ անգամ նույն հեքիաթը պատմելու ժամանակ ասաց, որ վիշապը սպանեց իշխանին։ Ես նրան ասացի, որ սխալվել է: Նա պնդեց, և բանը հասավ տուրուդմբոցի։ Հետո մենք եզրակացության չեկանք։ Դե, ես չէի ուզում, որ իշխանը սպանվի... վիշապը ի՞նչ է... գազան, անպետք գազան... իսկ իշխանը իշխան է և սիրում է գեղեցիկ իշխանուհուն... Նա չպետք է սպանվի... Հետո... վիշապն արդեն մի անգամ սպանվել է... սատկել...

— Բայց, ախր ինչպե՞ս ես այդ սատկած վիշապին վերակենդանացնում, — ասացի ես։ Եվ նորից մենք կարող էինք տուրուդմբոցն սկսել։

Իհարկե, դրանից հետո մենք նորից համերաշխ էինք։ Բայց հիմա, երբ ուզում եմ ինքս ինձ պատմել, չեմ կարողանում վերջավորությանը հասնել։ Եվ այդպիսով վիշապը իմ մտքում կյանքի ու մահվան մեջտեղն է մնում։ Ես կուզենայի, որ առհասարակ բոլոր տեսակի վիշապները, սատանաները, դևերը և չարքերը սատկեն, ջնջվեն աշխարհի երեսից ու վերանան։ Սակայն չեն վերանում։ Մեծ եղբայրս ասում է, որ գրքերում է գրված։ Իսկ այն րոպեին, երբ հայրիկս ինձ կանչեց, մեծ եղբորս հնարած այս նոր տեսակի վիշապը պատրաստվում էր գեղեցիկ աղջկան ուտել։ Ես չգիտեի՝ մեծ եղբայրս թույլ կտա՞, որ մեծ վիշապը աղջկան ուտի։ Եղբայրս այնպիսին է, որ... նա թույլ կտա, որ վիշապը աղջկան ուտի։ Ահա, վիշապի բերանը ահռելի կերպով բացված է, իմ հասակի չափ, երևում են նրա կարմիր լեզուն, մեծ և սուր ատամները թրերի շարանների պես ցցված են... և հեքիաթը կանգ է առել։ Վիշապի մեծ բերանը մնացել է բաց։ Հիմա չգիտեմ ինչ կպատահի, եթե վիշապի բերանը բաց մնա։

— Գոնե վիշապի բերանը փակիր, ասա, թե ինչպես է փակում. առանց աղջկան ուտելու՞, թե՞ հետը այնպես:

— Չե՛մ ասի, — ասաց մեծ եղբայրս՝ Վահրամը։

— Ասա՛։

— Հայրիկը քեզ կանչում է. չե՛մ ասի, այդպես էլ վիշապի բերանը բաց կթողնեմ, մինչև չգնաս հայրիկի մոտ, դե՛ գնա։

Ես շատ կուզենայի նորից տուրուդմբոց սկսել,

ՓԵՏՐՎԱՐ
№ 2 1963 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

բայց մեծ եղբայրս ինձանից չէր վախենում։ Ես էլ առհասարակ ոչ ոքից չեմ վախենում, բայց... հայրիկս կանչում է, և կարող է պատահել, որ վատ ստացվի, եթե կռիվ սկսեմ։ Դե, ուզում եմ, որ վիշապի բերանը փակվի, այն էլ առանց գեղեցիկ աղջկան ուտելու... ինչ արած... ախր ես չեմ կարող փակել։ Հետո... մտածում եմ, ինչպե՞ս նորից բանալ... դրա գաղտնիքը այդ անպիտանի մոտ է, ես չգիտեմ։

—Այո՛, վիշապի բերանը բաց է մնում, հասկացա՞ր. և բաց կմնա, մինչև հայրիկի մոտ չգնաս։ Իսկ քեզ համար հսկա վիշապը բերանը բացած՝ այդքան երկար չի կարող սպասել, հասկացա՞ր։

— Դե, արի սրան բան հասկացրու,—քրթմնջալով գնացի ես։

— Եթե այդպես քրթմնջաս, վիշապի բերանը երբեք չեմ փակի. դե գնա՛։

— Բա ի՞նչ պիտի անես։

— Ես ուրիշ հեքիաթ կպատմեմ... առանց վիշապների։

— Ը՛... — ես անմիջապես լռեցի։ Վախեցա, որ նա... դե ես նրան գիտեմ, կարող է այդպես էլ անել։ Իսկ ես ուզում եմ, բերանը բաց մնացած վիշապի հեքիաթը մինչև վերջ լսել։

Մեծ եղբայրս՝ Վահրամը, ըստ երևույթին, հասկացավ, որ իր խոսքերը ազդեցին և ավելի ինքնավստահ ավելացրեց.

— Ես քեզանից մեծ եմ, դու ինձ պետք է լսես։

Իհարկե, ես նրան պետք է լսեմ։ Նա սարսափելի հեքիաթներ շատ գիտե։ Իսկ ես էլ անասելի սիրում եմ սարսափելի հեքիաթներ լսել։

Փոքր եղբայրս՝ Աշոտը իմ շուրջը ոստոստելով հայրիկին մոտեցավ.

— Եկավ, հայրի՛կ. գալ չէր ուզում. Վահրամը մեծ վիշապի մասին հեքիաթներ էր պատմում և չվերջացրեց։

— Հիմա շուտով ճեր քնելու ժամը կգա: Իսկ գիշերները վիշապների մասին հեքիաթներ չեն պատմի,— ասաց հայրիկս:

Բայց ինձ համար ամենաերջանիկ պահն է, սարսափելի հեքիաթ լսելուց հետո մտնել վերմակի տակ և ինձ լավ պաշտպանված զգալ։ Հետո վիշապները թող հարձակվեն ինձ վրա, ես ոչ մի վիշապից էլ չեմ վախենում։ Չէ՞ որ ես իմ վերմակով պաշտպանված եմ: Ես ամբողջ գիշերը վերմակիս մեջ փաթաթված՝ թռչում եմ անհուն տարածության մեջ, ուր բազմաթիվ վիշապներ են թռչում և ինձանից վախենում են. ես նույնիսկ ինչ-որ մեծ թրով կարող եմ սպանել վիշապներին, որպեսզի գեղեցիկ աղջկան չուտեն։

— Հիմա կգնաս ցախանոց և ցերեկով կտրածս տախտակները կբերես — ասաց հայրս:

Մեր ցախանոցը պարտեզի ծայրին էր: Մութ էր։ Ես բակ իջա։ Ոչինչ չէի տեսնում։ Հետո աչքերս մթանը վարժվեցին և ես գնացի ցախանոց: Դռան մոտ կանգ առա։ Ցախանոցի ներսից ինչ-որ ճայ-



ներ լսեցի: Ես բանկոնս հանեցի և գլխիս անցկացրեցի։ Բանկոնս տաք էր, և ականջներս ու վիզս տաքացան։ Ես ինձ մի քիչ վերմակիս մեջ զգացի։ Հետո ցախանոց մտա։ Շատ մութ էր: Ես հորս կտրած տախտակների տեղը գիտեի։ Բայց դրանց հասնելու համար պետք է անցնեի մի ուրիշ փայտի կույտի վրայից: Եվ երբ ոտքս դրեցի այդ կույտի



վրա, փայտերը խուլ աղմուկով շարժվեցին. տեսա, որ գետնի տակից մի սև երախ բացվեց։ Ես բանկոնս վզիս շուրջը ավելի պինդ փաթաթեցի և մի քայլ ևս առաջ գնացի։ Ամեն անգամ, երբ քայլս գցում եմ, կույտից տարօրինակ ձայներ եմ լսում։ Այդ տարօրինակ ձայները վիշապների աղմուկն է թվում ինձ։ Եվ ես մեծ թուրը ձեռքիս թռչում եմ տարածության մեջ, անվեհեր իշխանի նման... ես փնտրում եմ բաց երախով վիշապին... ես նրան չգտա... դե, մեծ եղբայրս ինչ ուզենա կանի։ Նա ոչ ոքի մասին չի մտածում...

— Սուրի՜կ — լսեցի հանկարծ մեծ եղբորս՝ Վահրամի ձայնը։

— Ի՞նչ է — անմիջապես պատասխանեցի ես։ Ցախանոցում այնքան ծանոթ ձայներ լսվեցին, որ ես սաստիկ զարմացա։ Բայց դա Վահրամի ձայնի աղմուկը չէր։

— Շու՜տ արա — նորից կրկնեց Վահրամը։

Ես բանկոնս գլխիցս իջեցրի։ Ցախանոցից դուրս ելա։

Երբ տախտակները հորս տվեցի, նա խիստ բարկացած էր երևում։

— Սրանից հետո երեկոները հրեշների մասին հեքիաթներ չպատմեք։

Ես թաքուն գնացի Վահրամի մոտ ու շշնջացի.

— Դե, ասա՛, վիշապը կերա՞վ աղջկան, թե՞ ոչ, միայն ասա՛, այո՞, թե՞ ոչ։

— Չեմ հիշում։

# ՁՄԵՌ

ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

*Գյուղի վրա առավոտից*
*Գորշ ամպերն են լողում,*
*Ծառի ճյուղին սաստիկ ցրտից*
*Մի ճնճղուկ է դողում։*

*Վերից անձայն ցած են թափվում*
*Փաթիլները մեղմիկ.*
*Ու տներից դուրս են հանում*
*Մանուկներին փոքրիկ։*

*Հաճելի է վազվզելը*
*Ձմռան մաքուր օդում.*
*Խաղ են անում մանուկները*
*Ու կարծես չեն հոգնում։*

*Իսկ փաթիլները հեզաճաց*
*Ցած են թափվում վարար,*
*Դառնում ճերմա՜կ, ճերմա՜կ երազ*
*Փոքրիկների համար։*

# ՖԻԴԵԼԸ ԽՈՍՈՒՄ Է ԵՐԵԽԱՆԵՐԻ ՀԵՏ

ՄԱՅԱ ՕԿՈՒՆԵՎԱ

Երեխաները նոր էին ստացել մի հսկայական շենք, որտեղ առաջ տեղավորված էր Աստուրիասյան ակումբը։ Հազարավոր երեխաներ եկել էին այդ հին պալատը։ Դահլիճը տոնականորեն էր զարդարված։ Պատերից կախված էին լոզունգներ՝ «Յուրաքանչյուր կուբացի, որ սովորել է կարդալ և գրել—դա հարված է իմպերիալիզմին», «Պայքարենք իմպերիալիզմի և անգրագիտության դեմ», «Քեննեդի՛, հիշի՛ր, որ բոլոր կուբացիները մարքսիստներ են»։

Պիոներները հագել էին իրենց համազգեստները՝ կարմիր գլխարկներ, կեսը կապույտ, կեսը սպիտակ վզկապներ, աղջիկները՝ մոխրագույն յուբկաներով և սպիտակ վերնաշապիկներով, իսկ տղաները՝ մոխրագույն շալվարներով։

Երեխաներն այդ օրը հատկապես հանդիսավոր էին։ Նրանք համոզված էին, որ Պիոներների պալատի բացումը ինքը՝ Ֆիդելը կկատարի։

Ֆիդելը եկավ։ Նրա հետ էին Միավորված ռևոլյուցիոն կազմակերպության, արհմիությունների և երիտասարդական կազմակերպությունների ղեկավարները։ Դահլիճը ցնծության մեջ էր։

Ֆիդելը նստեց նախագահության սեղանի առջև։ Նա ուշադիր լսում էր ելույթ ունեցող երեխաներին։ Մարմնամարզիկներին փոխարինում էին երգիչները, պարողները, տեխնիկական թատրոնի արտիստները։

Բայց ահա հայտարարում են, որ ելույթ է ունենալու Ֆիդելը։ Ես չեմ կարող նկարագրել այն խանդավառությունը, որով դիմավորեցին նրան։

Ֆիդելը կանգնեց, հանեց գոտին՝ երկու մեծ ատրճանակներով, և դրեց նախագահության սեղանին։ Նրան պետք չէր զենքը, չէ՞ որ խոսելու էր երեխաների հետ։ Երեխաները ձգտում էին դեպի Ֆիդելը, երկարացնում ձեռքերը, ինչ-որ բաներ ասում, խանդավառությունից աղմկում։

Ելույթը հետաքրքիր էր։ Ֆիդելը խոսում էր երեխաների հետ ոչ ինչպես կառավարության ղեկավար, այլ ինչպես պիոներ-ջոկատավար։

— Երբեմն կյանքում ամենադժվարը լսելն է, — սկսեց Ֆիդելը, ժպտալով աղմկոտ դահլիճին, — և այդ վերաբերում է ոչ միայն երեխաներին, այլև մեծերին... մեծերին,— կրկնեց նա։

Դահլիճը լռեց։ Ֆիդելը նայեց երեխաներին։

— Դուք ցանկանու՞մ եք լինել լավ պիոներներ։ Այո՞, — հարցնում է Ֆիդելը՝ շարժելով գլուխը։

Դահլիճը պատասխանում է խմբով, բարեկամաբար.

— Սի՜ (այո)։

— Ձեզ դու՞ր է գալիս ձեր կազմակերպությունը։



— Սի՜, — գոռում են երեխաները։

— Դե՛, ուրեմն լավ է, — գլխով է անում Ֆիդելը,— ուրեմն եկեք նրան օգնենք։

Ֆիդելը ասում է, թե ինչպես պետք է երեխաները իրենց պահեն դպրոցում, տանը, մեծահասակների մոտ, որ պետք է լավ սովորեն, լսեն ուսուցիչներին, հանգստանան, լողանան գետերում, պայքարեն անգրագիտության դեմ։ Երեխաները հաճույքով համաձայնվում են Ֆիդելի հետ։

— Յուրաքանչյուր հանգստյան օր այստեղ՝ Պիոներների պալատում, ձեզ համար կլինեն զանազան զվարճալիքներ, որոնք կհաղորդվեն հեռուստացույցով։ Նա, ով ուզում է երգել, պարել, նվագել՝ թող գա այստեղ։ Երևի ձեզանից շատերը ցանկանում են դերասան դառնալ։ Եթե դուք շատ

եք ուզում, կդառնաք դերասաններ։ Պիոներների պալատը մեծ նշանակություն կունենա ձեզ համար։

Մինչ այդ Ֆիդելը երեխաների հետ այնպես էր խոսում, կարծես խաղում էր նրանց հետ, իսկ հիմա զրույցը փոխակերպվեց քաղաքական թեմայի։ Ֆիդելը երեխաներին սովորեցնում էր քաղաքականություն։

— Բանվորները մեզ մոտ կազմակերպված են. գյուղացիները, կանայք, երիտասարդները ունեն իրենց կազմակերպությունը։ Երեխաները նույնպես պետք է ունենան իրենց կազմակերպությունը։ Առաջ, մինչև ռևոլյուցիան, երեխաները չունեին կազմակերպություն։ Այն ժամանակ երեխաների մի մասը հարուստ էր, մյուսը՝ աղքատ։ Ոմանք ունեին ամեն ինչ, իսկ ուրիշները՝ ոչինչ։ Մի մասը



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ուներ կոշիկ, իսկ ուրիշները քայլում էին բոբիկ։ Ոմանք գնում էին դպրոց, իսկ մյուսները չէին գնում։ Ոմանց բուժում էին բժիշկները, իսկ շատերին՝ ոչ, որովհետև փող չունեին։ Ովքե՞ր ունեին շատ խաղալիքներ։

— Հարուստնե՛րը։

— Իսկ ով շատ խաղալիքներ ուներ, նա մեղավո՞ր էր։

— Ոչ՛ (ո՛չ)։

— Իսկ ո՞վ էր մեղավորը։

— Նրանց ծնողները։

— Այո՛,— ասում է Ֆիդելը։— Իսկ ինչու՞ նրանց ծնողները կարող էին իրենց երեխաներին այդքան շատ խաղալիք տալ։ Որովհետև նրանք շահագործում էին ուրիշ երեխաների ծնողներին։ Հարյուրավոր, հազարավոր, միլիոնավոր մարդիկ աշխատում էին գյուղերում, գործարաններում, և հենց նրանց երեխաները չունեին խաղալիքներ։ Նրանք Պիոներների պալատ էլ չունեին, իսկ ինչու՞։ Որովհետև փոքրամասնության ձեռքին էին գտնվում գործարանները, հողը, ամբողջ հարստությունը։ Ո՞րն էր ռևոլյուցիայի նպատակը։ Որպեսզի բոլոր երեխաները ունենան դպրոցներ, ծովափեր, լավ ուսուցիչներ, բժիշկներ, որպեսզի բոլոր երեխաները լինեն երջանիկ։ Եթե երեխան կոշիկ չունի, կարո՞ղ է երջանիկ լինել։

Դահլիճը պատասխանում է.

— Ոչ՛։

— Իսկ եթե երեխաները չհաճախեն կենդանաբանական այգի, նրանք երջանիկ կլինե՞ն։

— Ոչ՛։

— Արդարացի՞ է, որ մեկը ունենա ամեն ինչ, իսկ ուրիշը՝ ոչինչ։

— Ոչ՛։

— Իսկ ինչպե՞ս է արդարացի։

Երեխաները պատասխանում են.

— Որպեսզի բոլորն ունենան ամեն ինչ։

— Այո՛,— ասում է Ֆիդելը,— որպեսզի բոլոր երեխաները ունենան ամեն ինչ, որպեսզի յուրաքանչյուր երեխա ունենա այն, ինչ մինչ ռևոլյուցիան ունեին միայն հարուստների երեխաները, Ահա հենց դրա համար էլ կատարվեց մեր ռևոլյուցիան։

— Ո՞վ ամենից շատ շահեց ռևոլյուցիայից։

Երեխաները գոռում են.

— Ժողովու՛րդը։

— Դե՛, իհարկե, ժողովուրդը շահեց ռևոլյուցիայից, իսկ ամենից շատ շահեցին երեխաները։

Երեխաները հաստատում են.

— Երեխանե՛րը։

— Դուք երբևիցե տեսե՞լ եք, ինչպես են ձավ

դուրս գալիս շոգենավերը, ինչպես են երկինք բարձրանում ինքնաթիռները։ Տեսե՞լ եք, արդյոք, մեծ ավտոմեքենաներ, տրակտորներ, տանկեր, թնդանոթներ։ Վաղը դուք կվարեք շոգենավեր (ծափահարություն), ինքնաթիռներ (ծափահարություն), կդառնաք բժիշկներ, ճարտարապետներ, ինժեներներ (ծափահարություն), դերասաններ, բանվորներ, շինարարներ, աշխատավոր-գյուղացիներ, ինչ ցանկանաք (ծափահարություններ)։ Դուք կարող եք երգել թատրոնում, հանդես գալ հեռուստացույցով, և մենք ցանկանում ենք, որ դուք այժմվանից պատրաստվեք դրան։ Դրա համար պետք է երեխաները լավ սովորեն։ Նա, ով իրեն վատ կպահի տանը, դպրոցում, չի դառնա լավ ռեվոլյուցիոներ։ Թող ձեռք բարձրացնի նա, ով ցանկանում է լինել լավ ռեվոլյուցիոներ։

Բոլորը բարձրացնում են ձեռքերը։

— Ուրեմն, բոլո՞րդ եք ցանկանում լավ ռեվոլյուցիոներ դառնալ։

Երեխաները ասում են.

— Սի՛։

— Իսկ ի՞նչ պետք է անել, որպեսզի լավ ռեվոլյուցիոներ դառնաք։ Սովորե՛ք, ձեզ լա՛վ պահեք։

Երեխաները ամեն անգամ պատասխանում են.

— Սի՛։

— Դուք ամեն անգամ ասում եք՝ «Սի», բայց մինչև «Սի» ասելը, դուք մտածե՞լ եք։ Դուք պետք է լավ ընկերներ լինեք։ Դուք կցանկանա՞ք ձեր ընկերներին այն, ինչ ցանկանում եք ձեր եղբորը։ Դուք պետք է հարգեք ձեր բոլոր ընկերներին՝ սպիտակամորթներին, նեգրերին, տղաներին և աղջիկներին... Դուք բոլորդ պետք է լավ բարեկամներ լինեք և զգաք ձեզ երջանիկ։ Դուք ճանաչո՞ւմ եք նրանց, ովքեր զոհվել են Պլայա Խիրոնում։ Նրանք պայքարել են ձեր երջանկության համար։ Արդյոք գիտե՞ք ում անունով է կոչվում Պիոներների պալատը։ Այդ պալատը կոչվում է Պակիտո Գոնսալեսի անունով։ Պակիտո Գոնսալեսը տասներկու տարեկան էր, երբ նրան սպանեցին ոստիկանները։ Նրա անունը Կուբայում մեծարում են այնպես, ինչպես Պավլիկ Մորոզովի անունը Սովետական Միությունում։

— Մենք հպարտանում ենք մեր երիտասարդությամբ,— շարունակում է Ֆիդելը,— երիտասարդությունը ամեն գործում բոլորից առաջ է ընթանում։ Մենք այդպես ցանկանում ենք հպարտանալ նաև մեր երեխաներով, ցանկանում ենք, որ երեխաները հասկանան մեր ռեվոլյուցիան և օգնեն մեզ։ Եթե դուք ցանկանում եք այդ բոլորը, եկեք միասին բարձր ասենք. «Կեցցե՛ն Կուբայի երեխաները։ Կեցցե՛ կուբայական ռեվոլյուցիան։ Հայրենի՛ք կամ մա՛հ։ Մենք կհաղթե՛նք»։

Դահլիճում կատարվեց ինչ-որ անպատմելի մի բան։ Յուրաքանչյուր երեխա ցանկանում էր մոտենալ Ֆիդելին, սեղմել նրա ձեռքը, գրկել նրան։ Նրանք երկար ժամանակ չեն թողնում Ֆիդելին հեռանալ դահլիճից։

Ֆիդելը սեղանի վրայից վերցրեց իր գոտին՝ երկու ատրճանակներով, և ամուր կապեց։ Ֆիդելը գնաց, իսկ ձեռքերի ծափահարման փոթորիկը չէր դադարում։

Ֆիդելն արդեն հեռացել էր, երեխաները սկսեցին դիտել իրենց հրաշալի նվերը՝ Պիոներների պալատը, որ նրանց տվել էր կուբայական ռեվոլյուցիան։

Թարգմ. Կ. ՍԱՐՎԱԶՅԱՆ

# ԿԱՊԻՏԱՆ ՊԵՊԵ

ԴՅՈՒՆՏԵՐ ՖՈՍՏԵԼ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ռեվոլյուցիան հաղթանակեց։ Հավաննայի փողոցներում, Կուբա մեծ կղզու քաղաքներում ու գյուղերում գրեթե ամեն օր ինչ-որ նոր, անսպասելի բաներ էին տեղի ունենում։

Այդ ժամանակ Պեպեն ապրում էր Հավաննայում։ Որքան նա հիշում է՝ միշտ մաքրում էր օտարերկրացիների ու հարուստների կոշիկները այս մեծ քաղաքի փողոցների վրա։

Պեպեն հռչակավոր կոշիկ մաքրող էր։ Երբ նա մաքրում էր օտարերկրացիների կոշիկները, բարձրաձայն երգում էր նավաստիների ու ձկնորսների երգերը։ Եվ բոլորը, ովքեր ճանաչում էին, նրան անվանում էին կապիտան Պեպե։

Երբ կապիտան Պեպեն երգում էր, մարդիկ կանգնում ու լսում էին։ Իսկ չորս փոքրիկ տղաներ, ձեռքներին խոզանակներ, այնպես էին փայլեցնում ուրիշների կոշիկները, որ գրեթե նոր էին դառնում։ Պեպեն հանում էր գլխարկը և հավաքում զնգուն մետաղադրամը։

Երբ գիշերն իջնում էր ծովի վրա, փոքրիկ չորս կոշիկ մաքրողները Պեպեից ստանում էին մի քանի սենտ։ Կապիտան Պեպեն փոքրիկ տղաներին «ձիուկներ» էր անվանում։ Պեպեն հրամայում էր նրանց և իրեն զգում էր իսկական կապիտան։



Կապիտան Պեպեն գոհ էր իր կյանքից: Դրամը բավարարում էր հացի, բակլայի ու երբեմն էլ նույնիսկ տապակած մսեղենի համար: Բայց ռևոլ-յուցիան եկավ նաև կապիտան Պեպեի համար:

Մի անգամ կապիտան Պեպեն նկատեց, որ իր «ձիուկներից» մեկը պակաս է: Փոքրիկ Կամիլլոն անհետացել էր:

— Որտե՞ղ է Կամիլլոն,— զարմացած հարցրեց կապիտան Պեպեն:

Պատասխանի փոխարեն երեք փոքրիկ տղաները թոթվեցին ուսերը:

Պեպեն նորից երգեց, իսկ երեք «ձիուկները» օտարերկրացի անցորդների կոշիկները փայլեցրին: Եվ նա դարձյալ հանեց գլխարկը ու հավաքեց դրամը:

Փողոցում անսպասելիորեն հայտնվեց Կամիլլոն: Խոնավ, հարթ սանրված մազերն ընկած էին նրա փոքրիկ դեմքի շուրջը: Պատռտված շապիկից դուրս էր ցցվել մի մեծ ծաղիկ: Կամիլլոյի ձեռքին կար գիրք ու քարեգրչի գրատախտակ:

Փոքրիկ կոշիկ մաքրողները նայեցին Կամիլ-լոյին:

— Դու բավական ուշ ես գալիս,— խստորեն ասաց կապիտան Պեպեն,— իսկույն տնցի՛ր գործի:

Բայց փոքրիկ Կամիլլոն գլուխը բացասաբար շարժեց: Նա ուղիղ նայեց Պեպեի աչքերի մեջ:

— Ես դպրո՛ց եմ գնում,— հպարտորեն ասաց Կամիլլոն,— ես չեմ ուզում այլևս քո «ձին» լինել:

Կապիտան Պեպեն թքեց սալահատակին.

— Դու նորի՛ց կգաս ինձ մոտ, եթե չես ուզում քաղցից մեռնել:

Փոքրիկ Կամիլլոն ավելի ուժեղ թափահարեց գլուխը ու փախավ:

Այդ օրը կապիտան Պեպեն չերգեց այնպես լավ, ինչպես երգում էր: Իսկ «ձիուկները» զգացին, որ իրենց կապիտան Պեպեն ամենախիստ կապիտանն է:

Անցավ մի քանի օր: Մի անգամ առավոտյան անհետացավ նաև Պաոլոն: Կապիտան Պեպեն սաս-տիկ բարկացավ: Նա բարձրաձայն հայհոյեց Պաո-լոյին:

Բայց ահա փողոցում հայտնվեց Պաոլոն: Նրա ձեռքին կար քարեգրչի գրատախտակ, իսկ թևի տակ՝ գիրք: Նրա գանգուր մազերը խնամքով կո-կած էր կոկոսյան յուղով: Խայտաբղետ վերնաշա-պիկը կանոնավոր կերպով կարկատած էր:

Կապիտան Պեպեն բռնեց Պաոլոյի ուսը:

— Դու կմնաս այստե՛ղ, սատանան տանի այդ անիծված դպրոցը: Դա իմ բոլոր գործերը փչաց-նում է:

Պաոլոն պատասխանի փոխարեն ժպտաց: Ծի-ծաղը այնպես խոցեց կապիտան Պեպեին, որ նա ուզեց սաստիկ ծեծել փոքրիկ Պաոլոյին: Բայց Պաոլոն հանկարծ կռացավ և ճարպկորեն վզզաց բարձրահասակ Պեպեի ոտքերի տակով: Ծիծաղեց ու փախավ:

Այդ օրը կապիտան Պեպեն կարծես մոռացավ իր բոլոր երգերը: Ու երբ նորից գիշերն իջավ ծո-վի վրա, միայն մի քանի սենտ զնգաց նրա գրպանում: Կապիտան Պեպեն զայրացավ դպրոցի ու ռևոլյուցիայի վրա: Մի առավոտ էլ միայն փոք-րիկ Ցուլիոն էր կանգնած փողոցի անկյունում, ուր նա սպասում էր իր կապիտանին: Բայց մի շաբաթ անց, Ցուլիոն նույնպես գնաց դպրոց:

Այժմ կապիտան Պեպեն մենակ էր մաքրում կոշիկները: Փողը հազիվ էր բավականացնում հացին ու բակլային, նա այլևս չէր մտածում տապակած մսեղենի մասին:

Մի անգամ կապիտան Պեպեին մոտեցավ միլիցիոները ու ասաց, որ նա պետք է գնա դպրոց: Կապիտան Պեպեն թքեց սալահատակին:

— Դպրոցն ի՞նչ եմ անում: Ես երբեք դպրոց չեմ գնա,— և նա վերցրեց իր խոզանակներն ու գնաց ուրիշ փողոց:

Անցավ որոշ ժամանակ: Օրերից մի օր կապիտան Պեպեին մոտեցավ մի անծանոթ մարդ և հարցրեց, թե չի՞ ուզում Պեպեն մի քանի սենտ աշխատել:

— Ինչպե՞ս,— հետաքրքրվեց Պեպեն:

— Դու պետք է ինձ ցույց տաս ամբողջ Հավաննան, նավահանգիստն ու ծովափը:

Կապիտանն իսկույն հավաքեց իր խոզանակներն ու ցանկացավ գնալ անծանոթի հետ:

— Ո՛չ,— ասաց նա,— ո՛չ այսօր, դու կգաս վաղը առավոտյան,— և մեկնեց թղթի մի կտոր.— Այստեղ գրված է հասցես:

Պեպեն չհասցրեց ետ նայել, մարդն արդեն անհետացել էր ամբոխի մեջ:

Կապիտան Պեպեն նայեց թղթին, բայց չկարողացավ կարդալ: «Սատանան տանի»— հայհոյեց Պեպեն: Նա թուղթը դրեց գրպանը ու վազեց:

Փողոցի անկյունում կանգնած էր ծերունի Մանուելը: Նա վաճառում էր սեխ:

— Ի՞նչ է գրված այստեղ,— հարցրեց կապիտան Պեպեն ծերունուն:

Մանուելը երկար նայեց թղթին:

— Է՜,— հառաչեց նա,— որդի՛ս, ես էլ կարդալ չգիտեմ: Եթե գրել-կարդալ իմանայի, վաղուց դարձած կլինեի ավտո սարքող:

— Սատանա՛ն տանի,— ասաց կապիտան Պեպեն,— ավտո սարքողը ինձնից լավ չի ապրում:

Պեպեն թուղթը դրեց գրպանը ու սլացավ դեպի ավտոկայան, Ջոյի մոտ:

— Ի՞նչ է գրված այստեղ,— հարցրեց Ջոյին:

— Ինքդ կարդա, անվանի՜ կապիտան, ժամանակ չունեմ,— քրթմնջաց Ջոն:

— Ա՜խր ես կարդալ չգիտեմ,— հուսահատորեն հառաչեց կապիտան Պեպեն: Բայց արդեն Ջոն անհետացել էր:

Կապիտան Պեպեն սարսափելի բարկացավ: Նա դանդաղ իջավ փողոցով ներքև: Լայն պատուհաններ ունեցող բարձր, լուսավոր շենքի առջև կանգնեց Պեպեն: Հենց այդ պահին լայն բացվեց դուռը և բազմաթիվ տղաներ ու աղջիկներ վազեցին փողոց: Նրանց հետ էին նաև փոքրիկ Կամիլլոն ու մնացած «ձիուկները»:

— Հե՜յ,— բղավեց կապիտան Պեպեն,— կանգնե՛ք:

Նա վազեց իր նախկին «ձիուկների» մոտ ու փոքրիկ Կամիլլոյին մեկնեց թուղթը:

— Կարո՞ղ ես կարդալ,— խստորեն հարցրեց կապիտան Պեպեն:

Փոքրիկ Կամիլլոն լրջացավ: Շատ ջանք գործադրելուց նա մատը նույնիսկ տարավ բերանը: Մնացած տղաները, կանգնած Կամիլլոյի հետևում, ուսի վրայից լարված նայում էին թղթին:

— Ես կարող եմ կարդալ,— վերջապես ասաց Կամիլլոն:

— Դե՛, բարձրաձա՛յն կարդա,— հրամայեց կապիտան Պեպեն:

Փոքրիկ Կամիլլոն խորամանկորեն ժպտաց ու աչքով արեց տղաներին.

— Ինքդ կարդա, չէ՞ որ կապիտան ես,— ծիծաղեցին տղաները ու փախան:

Կապիտան Պեպեն երկար նայեց նրանց հետևից, բայց ոչ մի խոսք չասաց, ամաչեց:

— Այս ի՞նչ կարգ է,— քրթմնջաց նա կամաց,— սրանք ինձնից շատ գիտեն:

Ամբողջ օրը Պեպեն մտածեց: Նա չերգեց, կոշիկներ չմաքրեց ու ոչ մի սենտ չվաստակեց: Նա նստած իր խրճիթի առաջ, երկար ու երկար մտածեց:

Հաջորդ առավոտյան կապիտան Պեպեն լայն պատուհաններ ունեցող բարձր ու լուսավոր շենքի աստիճաններով դանդաղ բարձրանում էր: Մի ուսուցիչ կանգնեցրեց նրան.

— Նորե՞կ ես:

— Ես կապիտան Պեպեն եմ,— պատասխանեց կապիտանը: — Ես էլ եմ ուզում գրել-կարդալ սովորել:

Ուսուցիչը ժպտաց ու կապիտան Պեպեին տարավ դպրոց:

Ընդմիջմանը Պեպեն ու փոքրիկ Կամիլլոն հանդիպեցին:

— Ես այժմ կդառնամ իսկական կապիտան,— հպարտորեն ասաց Պեպեն,— ես ծովերով կտանեմ մեծ-մեծ նավեր:

— Ես էլ,— ծիծաղեց փոքրիկ Կամիլլոն ու հրեց Պեպեին:

— Սատանա՜ն տանի,— ասաց կապիտան Պեպեն և ժպտալով ձեռքը մեկնեց Կամիլլոյին:

*Ռուսերենից թարգմ. Հ. ՍԵՎԱՆ*





*Ա. ԴԱՐԲՆԻ*

# ԱՂՎԵՍԻ ՄՈՐԹԻՆ



Աղվեսն եկավ,
Մտավ գյուղը։
— Սովից հալվեց
Աչքիս յուղը։
Աղաչում եմ՝
Մի ճար արեք։
Ես չեմ ուզում
Հավ ու վառեկ։
Ո՛վ գյուղացի, ինձ պահպանի՛ր,
Եվ տուր գոնե մի քիչ պանիր։
Եկող տարի քեզ մոտ կգամ
Եվ իմ մորթին հենց քեզ կտամ։
Կուզես՝ ծախիր,
Կուզես՝ հագիր։
Բախտիդ դուռը
Դու մի՛ փակիր… —
Եվ գյուղացին
Նրան խղճաց.
Տվեց մածուն,
Պանիր ու հաց։

— Կեր, կշտացիր,
Պահիր մորթիդ… —
Աղվեսն ասաց՝
— Ապրի՛ որդիդ։
Քեզ եմ տալիս իմ մուշտակը։
Չե՞ս հավատում, բե՛ր դանակը… —
Եվ գյուղացին
Խրնիթ գնաց։
Երբ աղվեսը
Մենակ մնաց,
Շուրջը նայեց, աչք գողացավ,
Մի հավ բռնեց ու չքացավ։
Խեղճ գյուղացին
Գլխին թամփեց.
— Վա՛յ, խորամանկ,
Տես ո՛նց խաբեց։
Տարա՛վ, կերա՛վ
Զալիկ հավս։
Ես ու՞մ պատմեմ
Վիշտ ու ցավս…
Բայց կպատժեմ անամոթին
Ու կհանեմ նրա մորթին։

# ՔՈԹՈԹԻ ՎԻՇՏԸ



Մեր քոթոթը արտասվում է,
Կամաց հաչում.
Չենք հասկանում՝ ի՞նչ է ուզում,
Ու՞մ է կանչում։

Ջուր ենք տալիս՝ չի մոտենում,
Հաց ենք տալիս՝ չի վերցնում,
Միայն պոչն է թեթև շարժում,
Ականջները՝ խաղացնում։



Տեղը հանգիստ
Նա չի նստում։
Սան է գալիս
Ու վնգստում։

Ու՞մ է փնտրում,
Ի՞նչ է ուզում.
Խեղճ քոթոթը
Հո չի՞ մրսում։

Մեկ էլ հանկարծ վեր է թռչում,
Պոչը տնկած վազու՛մ, հաչու՛մ։
Ի՞նչ պատահեց։ Ու՞մ մոտ գնաց։
Ի՞նչ շնիկ է նրա դիմաց։
Հոտոտում են, իրար լիզում
Ու դունչ-դնչի կամաց խոսում։

Մեր քոթոթը էլ չի լալիս։
Ու երկուսով պար են գալիս.
Իրար հրում,
Ուրախ խաղում։
Մենք նայում ենք
Ու ծիծաղում։

— Ա՛յ, թե ում էր Քոթոն կանչում։
— Ա՛յ, ի՛նչ վիշտ էր նրան տանջում։
— Ա՛յ, թե ինչու ջուր չէր խմում։
Հաց չէր ուտում։
— Պարզ է, պարզ է՝
Իր եղբորն էր նա կարոտում…

*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



# Նավաբեկություն

ԷԴՄՈՆԴՈ ԴԸ ԱՄԻՉԻՍ

Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ

Մի քանի տարի առաջ, դեկտեմբերյան մի առավոտ, Լիվերպուլի[1] նավահանգստից դուրս եկավ մի մեծ շոգենավ: Շոգենավի վրա կար ավելի քան երկու հարյուր մարդ, որոնց թըվում՝ յոթանասուն հոգուց բաղկացած անձնակազմը: Գրեթե բոլոր նավաստիներն անգլիացիներ էին: Ուղևորների մեջ կային մի քանի իտալացիներ՝ երեք սինյոր, մի հոգևորական և երաժիշտների մի խումբ:

Շոգենավը գնալու էր Մալթա[2] կղզին: Մառախլապատ եղանակ էր: Երրորդ կարգի ուղևորների մեջ, որոնք տեղավորված էին ցռուկի վրա, կար տասներկուամյա մի տղա՝ իր տարիքի համեմատ ոչ բարձրահասակ, բայց ամրակազմ, սիցիլիացու համարձակ ու խիստ դեմքով: Նա իրեն մյուսներից քաշված էր պահում և նստել էր առաջակայմի մոտ, ճոպանների կույտի վրա: Կողքին դրված էր իրերի մաշված մի սնդուկ, որին տղան հենվել էր մի ձեռքով: Նա թուխ դեմք ուներ և գրեթե ուսերին հասնող սև, ալիքավոր մազեր: Աղքատիկ հագնված տղան փաթաթվել էր պատառոտված թիկնոցի մեջ, ուսից կախված էր հնամաշ կաշվե պայուսակը: Նա մտասույզ հայացքով նայում էր ուղևորներին, շոգենավին, ետ ու առաջ վազող նավաստիներին ու անհանգիստ ծովին: Կարծես հենց քիչ առաջ տղան ծանր վիշտ էր ապրել, ու նրա փոքրիկ դեմքը մանկական արտահայտություն չուներ:

Ծով դուրս գալուց քիչ հետո ցռուկի վրա հայտնվեց նավաստիներից մեկը՝ ճերմակահեր մի իտալացի, որ բռնել էր մի աղջկա ձեռքից: Նա կանգնեց փոքրիկ սիցիլիացու առաջ ու ասաց.

—Ահա քեզ մի ուղեկից, Մարիո,— և հեռացավ:

Աղջիկը նստեց ճոպանների կույտի վրա, տղայի կողքին: Նրանք իրար նայեցին:

— Ո՞ւր ես գնում,—հարցրեց փոքրիկ սիցիլիացին:

— Նեապոլի վրայով՝ Մալթա կղզին,—պատասխանեց աղջիկը և հետո ավելացրեց.—Ես գնում եմ հայրիկիս ու մայրիկիս մոտ, նրանք ինձ են սպասում: Իմ անունը Ջուլիետ Ֆաջանի է:

¹ Անգլիական խոշորագույն նավահանգիստ՝ Իռլանդական ծովում:

² Կղզի՝ Միջերկրական ծովում:

Տղան չպատասխանեց: Քիչ անց, նա իր պայուսակից հանեց հաց ու չորացրած մրգեր: Աղջիկն էլ պաքսիմատ ուներ: Կերան միասին:

— Զվարթացե՛ք,—գոչեց իտալացի նավաստին՝ նրանց մոտից վազելիս,—հիմի կսկսվի պարը:

Քամին գնալով ուժեղանում էր, և շոգենավն սկսել էր ուժգին օրորվել: Բայց երեխաները, որ չէին տառապում ծովային հիվանդությամբ, ուշք չդարձրին դրան:

Աղջիկը ժպտում էր: Նա էլ տղայի տարիքին էր, բայց հասակով նկատելիորեն բարձր էր: Բարալիկ, քիչ գունատ ու թուխ դեմքով և համեստ հագնված մի աղջիկ էր նա: Ուներ կարճ կտրած գունատ մազեր, գլխին՝ կարմիր գլխաշոր, իսկ ականջներին փայլում էին արծաթե ականջօղերը:

Ուտելիս երեխաները խոսքի բռնվեցին: Տղան ո՛չ մայր ուներ, ո՛չ հայր: Նրա հայրը, որ բանվոր էր, մեռել էր Լիվերպուլում՝ բոլորովին մենակ թողնելով տղային, և իտալական դեսպանը այժմ նրան ուղարկում էր ետ՝ հայրենի Պալերմո, ուր ապրում էին տղայի հեռավոր ազգականները: Աղջկան անցյալ տարի էին բերել Լոնդոն՝ այրի հորաքրոջ մոտ: Հորաքույրը շատ էր սիրում աղջըկան, և նրա չունևոր ծնողները միառժամանակ այրի կնոջ մոտ էին ուղարկել դստերը՝ հույս ունենալով խոստացած ժառանգության վրա: Բայց մի քանի ամիս անց, հորաքույրը հանրակառքի տակ էր ընկել ու մեռել՝ չկտակելով և ոչ մի չենտեզիմո[1]: Այդ ժամանակ աղջիկը ևս դիմել էր դեսպանին, որը նրան նստեցրել էր Իտալիա մեկնող շոգենավը: Երկուսի խնամքն էլ հանձնել էին իտալացի նավաստուն:

— Այսպես,—վերջացրեց աղջիկն իր պատմությունը,—հայրիկս ու մայրիկս կարծում են, թե ես վերադառնում եմ հարստացած, այնինչ՝ ընդհակառակը, վերադառնում եմ աղքատ: Բայց, միևնույն է, նրանք ինձ շատ են սիրում: Ես չորս եղբայր ունեմ, բոլորն էլ փոքրիկ, ամենամեծը ես եմ: Միշտ օգնում էի նրանց հագնվելիս: Նրանք շատ կուրախանան... Ես ոտքիս ծայրերի վրա ներս կմտնեմ... Բայց ի՜նչ անհանգիստ է ծովը... — Աղջիկը լռեց:

Հետո նա դարձավ տղային.

¹ Իտալական մանր դրամ:



— Դու ազգականներիդ մո՞տ պիտի ապրես:

— Այո՛... եթե համաձայնեն:

— Մի՞թե նրանք քեզ չեն սիրում:

— Չգիտեմ:

— Նոր տարուն իմ տասներեքը կլրանա,— ասաց աղջիկը:

Հետո նրանք սկսեցին խոսել ծովի և իրենց շրջապատող ուղևորների մասին: Ամբողջ օրը նստեցին կողք-կողքի, ժամանակ առ ժամանակ մի քանի խոսք փոխանակելով: Ուղևորները քույր ու եղբոր տեղ էին դնում նրանց: Աղջիկը զուլպա էր գործում, տղան մտածում էր, ծովը ավելի ու ավելի կատաղի էր դառնում:

Երեկոյան քնելու գնալիս՝ աղջիկն ասաց Մարիոյին.

— Բարի գիշեր:

— Ոչ ոք չի կարող այս գիշեր հանգիստ քնել, իմ խեղճ երեխեք,— գոչեց նրանց մոտով վազող իտալացի նավաստին:

Տղան ուզի ելավ, որ ինքն էլ բարի գիշեր մաղթի ընկերուհուն, երբ հանկարծ լեռնացած ալիքը փուլ գալով տախտակամածին՝ ուժգին հարվածով նրան նետեց նստարաններից մեկի վրա:

— Աստվա՛ծ իմ,— ճչաց աղջիկը,— դու արյունոտվել ես:

Ու նետվեց դեպի տղան: Մնացած ուղևորները վազեցին ներքև, առանց ուշադրություն դարձնելու երեխաներին: Աղջիկը ծունկի եկավ Մարիոյի կողքին, որ ընկել էր հարվածից շշմած, թաշկինակով սրբեց նակատի արյունը, հանեց կարմիր գլխաշորը ու կապեց վիրավորի գլուխը: Նրա դեղին շրջազգեստի վրա, գոտկատեղից քիչ վեր, արյան բիծ դրոշմվեց:

Մարիոն ուշքի եկավ ու ոտքի կանգնեց:

— Արդեն լա՞վ ես,— հարցրեց աղջիկը:

— Այո՛, ամեն ինչ անցավ,— պատասխանեց նա:

— Բարի գիշեր,— ասաց Ջուլիետը:

— Բարի գիշեր,— պատասխանեց Մարիոն, և կից սանդուղքներով երեխաներն իջան նավախցերը:

Նավաստու գուշակությունը ճիշտ դուրս եկավ. երեխաները դեռ չէին հասցրել քուն մտնել, երբ պայթեց զարհուրելի փոթորիկը: Անսպասելիորեն տախտակամածը խուժած ալիքները մի քանի րոպեում տաշեղի պես ջարդուփշուր արին կայմը, չոր տերևների նման սրբեցին տարան նավակողից կախված երեք մակույկը և ցռուկից չորս կամրջասյուն պոկեցին:

Նավախցերում խուճապ սկսվեց, սարսափը պատեց մարդկանց, աղմուկ-աղաղակ բարձրացավ, լացի ու աղոթքի ձայներ լսվեցին: Ծովը գնալով ավելի ու ավելի էր մոլեգնում: Լուսաբացին փոթորիկն ավելի կատաղի դարձավ: Հսկայական ալիքները կողքերից հարձակվելով շոգենավի վրա, լցվում էին տախտակամածը և ջարդուփշուր անում, սրբում-տանում պատահած ամեն ինչ:

Մեքենայական բաժանմունքի ծածկը ճեղքվեց, և ջուրը սոսկալի շառաչով լցվեց նավի ներսը: Հնոցները հանգան, հնոցապաններր փախան:

Լսվեց մի ահեղ ձայն.

— Դեպի պոմպե՛րը:

Նավապետի ձայնն էր: Նավաստիները նետվեցին դեպի պոմպերը: Բայց հետևից անսպասելիորեն խուժած հսկայական ալիքը ջարդեց ճաղաշարերն ու դռնակները, և ջուրը ներս հորդեց:

Մարդիկ իրար էին նայում ճեպ-ճերմակ դեմքերով: Սոսկալի էր կատաղած ծովը: Նավը ծանրորեն թեքվում էր մերթ մի, մերթ մյուս կող-



քի վրա։ Եկավ այն պահը, երբ նավապետը փորձեց փրկարար մակույկ իջեցնել ծովը։ Հինգ նավաստիներով մակույկը սահեց ցած, բայց ալիքները շուռ տվին այն, և երկու նավաստի, որոնցից մեկը երեխաներին հսկող իտալացին էր, անհետացան հորձանքում, մյուսներին հազիվ հաջողվեց բռնել ճոպաններից ու նավ բարձրանալ։

Դրանից հետո նույնիսկ անձնակազմը կորցրեց արիությունը։ Երկու ժամ անց, շոգենավն արդեն կիսով չափ ընկղմվել էր ջրի մեջ։ Սոսկալի պատկեր էր տախտակամածի վրա։ Խելակորույս մայրերը կրծքներին էին սեղմում երեխաներին, ընկերները գրկախառնվում ու հրաժեշտ էին տալիս միմյանց. ոմանք իջնում էին ցած՝ նավախցերը, որպեսզի մեռնեն առանց ծովը տեսնելու։

Երկու երեխաները՝ Մարիոն ու Ջուլիետը, ցընորվածի նման, հենված կայմին, անթարթ նայում էին ծովին։ Հուզումն ու իրարանցումը կարծես մի քիչ պակասեց, բայց նավը շարունակում էր դանդաղորեն սուզվել։ Ըստ երևույթին, մնում էին հաշված րոպեներ։

— Մակույկը ծովն իջեցնել,—գոչեց նավապետը։

Ջուրն իջեցրին վերջին մակույկը, ուր տեղավորվեց տասնչորս նավաստի և երեք ուղևոր։

Նավապետը մնաց նավի վրա։

— Իջեք մեզ մո՛տ,—գոչում էին նրան ներքևից։

— Իմ պարտքն է մեռնել նավի վրա,—եղավ նրա պատասխանը։

— Մենք կհանդիպե՞նք որևէ նավի ու կփրկվե՞նք,—գոչում էին նրանք,—իսկ դուք կխորտակվեք։

— Ես մնում եմ։

— Մի տե՞ղ էլ կա,—գոռացին նավաստիները՝ դիմելով մյուս ուղևորներին,—կին ուղարկեք։

Առաջ եկավ մի կին՝ նավապետի քույրը, բայց տեսնելով այն տարածությունը, որ բաժանում էր նավը մակույկից, վախեցավ թռչել և ուշաթափ ընկավ տախտակամածին։ Մնացած կանայք էլ ուշագնաց էին։

— Մի երեխա՜,—կանչեցին նավաստիները։

Այդ ձայնի վրա փոքրիկ սիցիլացին ու իր ընկերուհին, որ մինչև այդ քարացել էին աներևակայելի սարսափից, ասես կյանքի ինչ-որ բնազդով արթնացան, մի ակնթարթում պոկ եկան կայմից ու միաբերան «ես» գոռալով և վայրի գազանիկների պես մեկը մյուսին ետ մղելով, նետվեցին դեպի նավեզրը։

— Ամենափոքրի՜ն,—գոռում էին նավաստիները։ — Մակույկն առանց այն էլ ծանրաբեռնված է։ Ամենափոքրին։

Այդ խոսքը լսելով, աղջիկը շանթահար եղած կախեց ձեռքերն ու անշարժացավ, մարած աչքերը հառած Մարիոյին։ Տղան նայեց նրան, տեսավ արյան բիծը նրա շրջազգեստի վրա, մտաբերեց ամեն ինչ, ու նրա դեմքը ողողվեց մի զարմանահրաշ լույսով։

Այդ ժամանակ Մարիոն ճչաց օտարոտի ձայնով.

—Նա թեթև է։ Դո՛ւ, Ջուլիետ։ Դու հայր ու մայր ունես։ Ես մեն-մենակ եմ։ Ես իմ տեղը զիջում եմ քեզ։ Թռի՛ր։

— Ծո՞վը նետիր նրան,—գոռում էին նավաստիները։

Մարիոն գրկեց Ջուլիետի մեջքը և ալիքների մեջ նետեց նրան։

Աղջիկը ճչաց ու շրմփոցով սուզվեց ջրի մեջ. նավաստիներից մեկը բռնեց նրան ու մակույկի մեջ քաշեց։ Տղան, գլուխը բարձր պահած, քարացավ նավեզրին։ Քամին ծածանում էր նրա գանգուրները, բայց նա կանգնել էր անշարժ, լի խաղաղ վսեմությամբ։

Մակույկը հեռացավ և կարողացավ խույս տալ սուզվող նավի մոտ գոյացած ջրապտույտից, որ սպառնում էր շուռ տալ նրան։

Այդ ժամանակ աղջիկը, որ մինչև այդ կարծես կորցրել էր իրեն, շուռ եկավ Մարիոյի կողմն ու աղեկտուր լաց եղավ։

— Մնաս բարո՜վ, Մարիո՜,—հեկեկում էր աղջիկը՝ ձեռքերը նրան պարզած։ — Մնաս բարո՜վ։

— Գնաս բարո՜վ,— պատասխանեց տղան, վեր պարզելով ձեռքերը։

Մակույկն արագորեն հեռանում էր մոլեգնած ալիքների վրայով, մռայլ երկնքի տակ։ Շոգենավի վրա այլևս ոչ ոք չէր ճչում։ Ալիքներն արդեն լիզում էին տախտակամածի եզրերը։

Աղջիկը փակեց աչքերը։ Երբ նա գլուխը բարձրացրեց ու նորից նայեց ծովին, այլևս նրա աչքին ոչինչ չերևաց։

Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑ

# ՀՄՈՒՏ ՁԵՌՔԵՐՈՎ



ԱԼ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

Մի կիրակի Պարույրի հետ անցկացրինք Դվինում: Տղաս առաջին անգամ էր լինում Արտաշատի շրջանում, այն էլ աշնանը, երբ հազար բերք ու բարիքով էր լցված Արարատյան դաշտը: Կոլտնտեսությունը հավաքում էր այգիների առատ բերքը: Բոլորը՝ մեծից-փոքր, այգիներում էին, եռուզեռի մեջ:

—Ես էլ եմ ուզում այնտեղ լինել,—խնդրեց Պարույրը:

— Կգնանք, մի՛ շտապիր, մեր Սուրիկը քեզ ամեն տեղ էլ կըտանի: Նախ կտեսնեք դպրոցի արհեստանոցը, ձագարանոցը, թռչնանոցը, դպրոցի հողամասը: Իսկ հետո կգնաք նաև այգիները,—ասաց մեր հյուրընկալ քեռի Հարութը:

Սուրիկին չգտանք: Նա կամ այգիներում էր, կամ արհեստանոցում: Նախաճաշելուց հետո, զրուցելով շարժվեցինք դպրոցի կողմը, որ գտնվում է գյուղի կենտրոնում՝ գլխավոր փողոցի վրա:

— Այս էլ մեր ընկեր Սիմոնյանը,—բակում կանգնած՝ միջինից բարձր, թխադեմ մարդուն ցույց տալով, ուրախ բացականչեց Հարութն ու արագ վրա բերեց.— Դե՛, ես վազեմ բրիգադիս մոտ, գործ շատ ունեմ, դիրեկտորը ձեզ ամեն բան կբացատրի, իսկ երբ վերջացնեք, կբռնեք այս ճանապարհը և ուղիղ կգաք մեզ մոտ՝ «հնձաններ»:

Առաջին հարկում մի ընդարձակ դասասենյակ է զբաղեցնում Դվինի ութամյա դպրոցի ուսումնական փայտամշակման արհեստանոցը: Երբ ներս մտանք, այնտեղ մի քանի պատանիներ, մըտազբաղ դեմքերով, չարչարվում էին ինչ-որ բանի վրա:

— Սրանք ատաղձագործական խմբակի տղաներից են, նոր մոդելի վրա են աշխատում: Թեև կիրակի է, բայց նրանք փակվել են արհեստանոցում:

Արհեստանոցը առաջին հայացքից նմանվում էր մի խիստ հետաքրքրական ու ինքնատիպ ցուցահանդեսի: Ինչ ասես, որ չկար, հասարակ կախարանից ու փայտե մուրճիկից սկսած՝ մինչև գործող բարդ մոդելներ:

Քանի որ արհեստանոցի վարիչ Սերյոժա Բաբլոյանը այնտեղ չէր, դիրեկտորն ինքը հանձն առավ ծանոթացնել աշխատանքներին: Սակայն, երևում էր, որ նա դժվարանում է, թե ինչից սկսի: Արդյոք կողք-կողքի շարված իրերի նմուշներից, թե այն հաստոցից, որոնց վրա պատրաստվել են այդ իրերը: Չէ՞ որ տասնվեց գործողություն կատարող այդ հաստոցը նրանք չեն ստացել որևէ գործարանից: Դա ստեղծել է արհեստանոցի վարիչը իր պատանի օգնականների հետ միասին:

Հիմա էլ ես ու Պարույրը հաճույքով ենք մտաբերում այն կարճատև ժամերը, որ անցկացրինք այդ փոքրիկ գործարանում:

Դիրեկտորը պատմում էր, թե ինչքան հետաքրքիր ու բովանդակալից են անցնում աշխատանքային ուսուցման ժամերը: Ֆիզիկայի ուսուցիչ Լևոն Ալմազյանը զանազան սարքեր է պատրաստել տալիս երեխաներին և լաբորատորիան հարստացնում ինքնաշեն գործիքներով: Շատ անգամ նրանք իրենց փորձերի համար հնարում են այնպիսի հարմարանքներ, որոնք ոչ մի տեղից պատրաստի չես կարող ձեռք բերել: Որոշ իրեր էլ պատրաստում են մաթեմատիկայի, աշխարհագրության և մյուս առարկաների դասավանդման հետ կապված:

Բոլորը սիրում են իրենց արհեստանոցը, և նրանցից շատ-շատերը ցանկանում են ավելի խորանալ, մասնագիտանալ հյուսնի արհեստում: Դրա համար ընտեղծված է պատանի ատաղձագործների խմբակ, որտեղ կարող են ընդգրկվել միայն նրանք, ովքեր առաջադեմ են ուսման մեջ: «Վատ սովորողից լավ արհեստավոր մի՛ սպասիր» — այսպես են ասում դպրոցում, և դա ճիշտ է: Խմբակի տղաներն այնքան են հմտացել իրենց մասնագիտության մեջ, որ նույնիսկ պատվերներ են ընդունում:

Ահա նրանց պատրաստած աշակերտական սեղանները, որոնցից մի քանի տասնյակ հատ որպես նվեր ուղարկվել է Լուսակերտի դպրոցին: Ահա և ուսուցչական սեղանները, գրատախտակները, որոնք նույնպես տասնյակներով այլ դպրոցներ են ուղարկվել: Ահա զանազան տիպի տնային գործածության իրեր՝ կախարան, շրջանակ, շախմատ: Իսկ ինչքան գրադարակ ու զա-

նազան խաղալիքներ են պատրաստել նրանք գյուղի մանկամսուրտեղի երեխաներին ուրախացնելու համար:

Բայց ամենազարմանալին տեսանք արհեստանոցում. դրանք գործող մոդելներն էին, որ պատրաստված էին հնարամտորեն ու վարպետ ձեռքով: Ահա իրենց դպրոցի երկհարկանի, հնատիպ, քարերով շարված շենքը, փայտյա սանդուղքը, երկար ու նեղ պատշգամբը՝ երկու ճյուղը ջարդված և պատի վերին անկյունի ծեփը թափված...ամեն ինչ լուսանկարչական ճշտությամբ է կատարված: Ասես դպրոցը հազար անգամ փոքրացել, մտել է իր այս դասասենյակներից մեկը, որպես «կենդանի նկար»:

Բայց այդքան խիստ նմանությունը չէ զարմանալին, այլ այն, որ կոճակը սեղմելուց հետո, զվարթորեն հնչում է մոդել-դպրոցի զանգը, և, ի՞նչ եք կարծում... պլաստիլինից պատրաստված աշակերտները շտապում են դասարանները: Մեխանիզմի վրա պտտվում է ողջ շենքը: Աշնան ամպամած երեկո է: Դեռ չեն վերջացել երկրորդ հերթի պարապմունքները, և ժպտացող աչիկների պես դասասենյակներում կայծկլտում են փոքրիկ էլեկտրական լամպերը...

Պարույրի համբերությունը հատել էր արդեն, երբ դիրեկտորը առանց շտապելու, վերջապես մոտեցավ սովետական արբանյականավերի հավաքական մոդելին...

Սկսում է աղմկել շարժիչը... Դանդաղորեն իր հավերժական պտույտն է կատարում Երկրագունդը իր առանցքի ու Արևի շուրջը: Ուժեղ փայլով բռնկվում են լույսերը, ու մի վայրկյան գլոբուսի վրա շողում է «Մոսկվա» բառը: Տանող հրթիռը արբանյականավը դուրս է բերում ուղեծիր: Նա արդեն շարունակում է իր պտույտները, երբ սուրում են դեպի Արևը, ապա դեպի Վեներան թռչող հրթիռները...

Լսում ենք ծանոթ ազդանշանները՝ տո՛ւ-տո՛ւ-տո՛ւ-տո՛ւ...

Մի պահ մոռանում ես, որ կանգնած ես դպրոցականների ձեռքով սարքած մոդելի առաջ:

— Այժմ տղաները պատրաստվում են կարևոր լրացումներ և ուղղումներ մտցնել այս մոդելի մեջ,— ասում է դիրեկտորը,— անհրաժեշտ է ցույց տալ տիեզերական եղբայրների՝ Անդրիան Նիկոլաևի և Պավել Պոպովիչի խմբային թռիչքի ուղեծիրն ու վայրէջքը:

Բայց մենք ե՞րբ կարող ենք դուրս գալ այս ստեղծագործական աշխատանքի նմուշներով լեցուն սենյակից, եթե ամեն մեկի առաջ այսքան երկար կանգնելու լինենք: Օրեր են պետք բոլորի մասին մանրամասն խոսելու համար: Բայց ինչպե՞ս կարող ենք անտարբեր անցնել արհեստանոցի վարիչի ստեղծած այգեթաղ մեքենայի մոդելի կողքով: Դա մի հրաշալի գյուտ է, որ եթե իրողություն դառնա, ապա նրա ստեղծողը այգեգործների բոլոր սերունդների շնորհակալությանը կարժանանա, որ ազատում է նրանց ամենածանր աշխատանքից՝ այգեթաղից: Պարույրը լարում է մեքենան, և գութանի փոքրիկ խոփերը սկըսում են վերուվար շարժվել...

— Հիմա գյուտի հեղինակը՝ մեր Սերյոժան, գտնվում է գիտա-հետազոտական ինստիտուտում՝ մեքենայի գործող մոդելն են պատրաստում փորձարկելու համար,— չթաքցրած հպարտությամբ ասում է դիրեկտորը և ավելացնում.— Տաղանդ է, բնատուր տաղանդ, նրա հայրն էլ այդպիսին է եղել:

Տղաներն իրենց գործն ավարտելով պատրաստվում էին տուն գնալ: Պարույրն արդեն հասցրել էր նրանցից մի քանիսին անուն-ազգանունով ճանաչել ու, մեկ-մեկ գլխով ցույց տալով, ասում էր.

—Այն բարձրահասակը, քչախոսը Պետրոսյան Արամայիսն է, յոթերորդ դասարանից, էն շեկը Լաերտն է՝ ութերորդցի, չարն է երևում, ցածրահասակ, թուխ դեմքովը Արմենակյան Լյովան է, մյուսը Դագիկն է, կողքինը՝ Սեվադան...Հայրի՛կ, գիտե՞ս ինչ տղերք են...

— Բոլորն էլ աշխատասեր ու շնորհքով են, տղա՛ս, չես սխալվում,—միջամտեց դիրեկտորը,— երբ դպրոցը կավարտեն, այստեղից կգնան վարպետի կոչումով, ինչպես նրանց ընկերները՝ Հակոբյան Համլետը, Ավագյան Մարտիկը և մյուսները, որոնք Արտաշատի կահույքի ֆաբրիկայում աշխատում են որպես վարպետներ:

Կառուցվում է Դվինի տիպային նոր դպրոցը իր բոլոր հարմարություններով: Կհնչի նոր տարվա զանգը, և արհեստանոցը աշակերտների առաջ իր դռները կբացի որպես ուսումնա-արտադրական մի խոշոր կոմբինատ, և այն ժամանակ արդեն այդ շնորհալիների թիվը կհասնի հարյուրների:



*Լուսանկարները՝*
*Ռ. ԳԵՎՈՐԳՅԱՆԻ*



Բաժինը վարում է
պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ

## ՋՐՈՒՑՑ ԱՄՊԵՐԻ ՄԱՍԻՆ

Ձյունն ու անձրևը դաշտերի համար կուտակում են խոնավություն և խոստանում են առատ բերք, կայծակները օդի ազոտը փոխարկում են ազոտի օքսիդի, որը սնունդ է հանդիսանում բույսերի համար։ Բայց մյուս կողմից էլ ձյունակույտերը կանգնեցնում են գնացքները, կարկուտը ոչնչացնում է այգիները, սառցադաշտերը ծածկում են արոտավայրերը, և կենդանիները զրկվում են կերից։ Անձրևը, ձյունը, կայծակը արդյունք են ամպերի։

Գիտնականների կարծիքով գոյություն ունի 40 տեսակի ամպ։ Կան «ճաղատ», «թավամազ» և այլ տեսակի ամպեր։ Ամպերը կազմված են մեկ միլիմետրի միլիոներորդական մասից էլ փոքր



ջրի կաթիլներից և սառցի մանր բյուրեղներից, որոնք ընկնելով օդային հոսանքի մեջ, ենթարկվում են մի շարք փոփոխությունների և թափվում ներքև։

Բայց այդ ամենի մասին գիտենալը դեռևս քիչ է։ Հարկավոր է «սանձել» ամպեր, ցրել մառախուղները, այնպես անել, որ անձրև գա, կարկուտը կանխվի։

Դրա համար որոշել են օգտվել «չոր սառույցից»՝ ածխաթթվից։ Գիտնականները ինքնաթիռից բաց են թողել «չոր սառույցի» գնդիկներ, որոնք ունեցել են 70 աստիճան ցրտություն։ Այդ սառնության հետևանքով գնդիկների շուրջը գոյացել են մեծ թվով սառցե բյուրեղներ։ Ապա գնդիկներն աստիճանաբար սկսել են հալվել։ Բայց մինչև ոչնչանալը անցել են 3—4 կիլոմետր տարածություն և ստեղծել միլիոնավոր ձյան փաթիլներ։ Ուրեմն հնարավոր է այնպես անել, որ մեծ տարածության վրա ձյուն գա։

Իսկ ինչպե՞ս ցրել մառախուղը և ինչու՞։

Մռայլ առավոտ է։ Ամպերի թանձր շղարշը ծածկել է երկինքը։ Իսկ օդանավակայանի վրա խիտ մառախուղ է կախվել։ Ինքնաթիռները չեն կարողանում ոչ թռչել և ոչ էլ վայրէջք կատարել։ Հանկարծ ամպերի միջից լսվում է մոտորների աղմուկ։ Ի՞նչ բան է դա։ Օդերևութաբանական Գլխավոր վարչության «Թռչող լաբորատորիան» է աշխատում։ Օդանավակայանի վրա թափվում են փոշու նման մանր փաթիլներ։ Ամպերը ճեղքվում են։ Անցած կես ժամ, մառախուղը անհետանում է։ Պայծառ լուսավորում է արևը։ Այժմ ինքնաթիռները կարող են դուրս գալ երկինք...

### ՀՍԿԱ ՄՈՂԵՍՆԵՐ

Մալեզյան արշիպելագի Կոմոդո կղզում ապրում է մողեսների մի տեսակ, որ կոչվում է կոմոդոյան վիշապ։ Այդ մողեսների երկարությունը հասնում է մինչև 3 մետր 75 սմ-ի. գիշատիչներ են, ունեն շատ ուժեղ վիզ ու ճիրաններ և շատ արագաշարժ են։ Նրանց պոչը ծառայում է որպես զենք, որսին հարվածելու համար և որպես թի՝ ջրում լողալիս։ Խոտերի մեջ դարան մտած, նրանք սպասում են որսին և պոչի մի հարվածով տապալելով, սկսում են հոշոտել։ Որսում են կապիկներ, եղջերուներ, խոզեր։

### ԳԻՐՔ. ՈՐԸ ՉԵՐ ԲԱՑՎԵԼ ԵՐԵՔ ՀԱԶԱՐ ՏԱՐԻ

Նեղոսի ափին, եգիպտական քարե մի դամբարան պեղելիս՝ գիտնականները գտել են հետաքրքիր մի գիրք, որը պատկանել է հին եգիպտական գերագույն քրմապետ Ամունային։ Այդ գիրքը, որը չի բացվել երեք հազար տարի, նոր լույս է սփռում հին Եգիպտոսի պատմության մի շարք մութ հարցերի վրա։ Գիրքն այժմ գտնվում է Լոնդոնի Բրիտանական թանգարանում։

# ՆԱՊԱՍՏԱԿՆ ՈՒ ՃԱԳԱՐԸ ԵՂԲԱՅՐ ԵՆ ՈՒ ԹՇՆԱՄԻ

Նույն պայմաններում ապրող այս երկու կենդանիները թեև շատ նման են իրենց կառուցվածքով, բայց խիստ զանազանվում են վարքով ու կենցաղով։ Նապաստակներն ու ճագարները երբեք չեն հաշտվում միմյանց հետ. Նրանց միջև կատարյալ ճակատամարտեր են տեղի ունենում։ Ճագարները շատ ընտելացող կենդանիներ են, իսկ նապաստակները վայրի են ու ապրում են միայն զույգերով։ Նապաստակն իր ողջ կյանքը անց է կացնում թարմ օդում. ճագարը՝ բազմաթիվ «սենյակներ» ունեցող խոր բներում։ Հետաքրքրական է, որ այդ «սենյակների» որոշ մասը ծառայում է որպես զուգարան։

Նապաստակի ձագը լույս աշխարհ է գալիս բրդով ծածկված, բաց աչքերով։ Ծնվելուց մի քանի ժամ հետո նա արդեն ընդունակ է շարժվելու։ Մայր նապաստակը բաժանում է ձագերին և անվտանգության համար թաքցնում տարբեր տեղերում։ Թվում է, թե նրանք լքված են։ Բայց հենց վրա է հասնում գիշերը, նապաստակը մեծ ցատկումներ անելով, որպեսզի հետք չթողնի, գնում է մի ձագուկից մյուսի



մոտ և կերակրում նրանց։ Նապաստակի ձագերը բոլորովին հոտ չունեն։ Շունը կարող է անցնել նրանց կողքով և չզգալ նրանց գոյությունը։ Նապաստակները ընտելանում են մի որոշակի տեղի և նույնիսկ ձգտում են վերադառնալ իրենց հին բնակավայրը և այնտեղ մեռնել։

Իսկ ճագարն իր թույլ ու անպաշտպան ձագուկների համար հատուկ թունել է փորում, հատակը ծածկում իր կրծքից պոկած աղվամազով, չոր խոտով ու մամուռով։ Ամեն երեկո փակելով թունելի «դուռը», հողով հավասարեցնելով գետնին, որպեսզի հնարավոր չլինի գտնել ձագուկներին, մայրը գնում է իր սովորական տունը։ Նա աստիճանաբար ձագերին սովորեցնում է ցերեկվա լույսին, փոքր առ փոքր լայնացնելով բնի փոքրիկ պատուհանները։

Ճագարները խժռում են անխտիր բոլոր բույսերը, նապաստակները ուտում են միայն նուրբ ծիլերն ու ընտրովի խոտեր։

Նապաստակներն ու ճագարները բարեկամանում են միայն որսի շրջանում, երբ նրանց մի ընդհանուր վտանգ է սպառնում։

# ԾՈՎԸ ՕՎԿԻԱՆՈՍՈՒՄ

Ատլանտյան օվկիանոսում լողում է ջրիմուռների մի հսկայական ծով, որն ունի մոտ 2000 կմ. լայնություն և 5000 կմ. երկարություն։

Այդ խոտածածկ «ծովի» հարավային մասով անցնում է Հյուսիս-հասարակածային հոսանքը, աևմտյան մասով դեպի հյուսիս ձգվում է Գոլֆշտրեմը, որի շարունակությունը հանդիսանում է Ատլանտյան հոսանքը։ Իսկ արևելյան կողմից անցնում է Կանարյան հոսանքը։ Ըստ ժամացույցի սլաքի շարժվում են նաև ջրիմուռները, նրանց հետ էլ կենդանական աշխարհի ներկայացուցիչները։ Ջուրն այդտեղ տաք է ու աղի։ Պորտուգալական ծովագնացները այդ գորշագույն ջրիմուռների թագավորությունը անվանեցին «Սարգասսա», քանի որ ջրիմուռների վրայի օդի բշտիկները իրենց ձևով շատ են հիշեցնում Պորտուգալիայի «սարգա» կոչվող խաղողին։ Հենց օդի այդ բշտիկների շնորհիվ է, որ ջրիմուռները լողում են։ Սարգասսյան ծովում բնակվող կենդանի էակները ձեռք են բերել պաշտպանական գույն։ Ջրիմուռների տերևների վրա շարժվում են դեղնա-դարչնագույն խեցգետիններ, ոզնի-ձկներ։

Ամեն տարի Եվրոպայի և Ամերիկայի գետերում բնակվող օձաձկները թողնում են իրենց հարազատ վայրերը և դուրս գալիս դեպի Ատլանտյան օվկիանոս։ Գիտնականները երկար ժամանակ չէին կարողանում գտնել, թե որտեղ են բազմանում օձաձկները։ Եվ ահա Սարգասսյան ծովում, մոտ 400 մ. խորության վրա, հայտնաբերվեցին մեծ քանակությամբ օձաձկներ։ Այնտեղ, կիսախավարում, հունվարի վերջից մինչև գարնան սկիզբը, նրանք կյանքում առաջին և վերջին անգամ ձկնկիթ են դնում և անմիջապես սատկում։ Օձաձկների թրթուրները, երեք տարեկան դառնալով, վերադառնում են այնտեղ, որտեղից եկել էին մայրերը։ Օձաձկների այդքան երկար ճանապարհորդությունը կարելի է բացատրել նրանով, որ Սարգասսյան ծովը Ատլանտյան օվկիանոսի ամենատաք շրջանն է, բացի այդ, օձաձկների թրթուրներն այդտեղ քիչ թշնամիներ ունեն։

# Հազվագյուտ ծառատեսակներ

Բնության հուշարձաններ են նաև հազվագյուտ ծառատեսակներն ու բույսերը, որոնք մնացել են երրորդական •դարաշրջանից:

Հայաստանի բնության հազվագյուտ նմուշներից են շագանակենին, սոսին (չինարին), արջատխլենին, արևելյան արմավենին, արևելյան հաճարենին, մրտավարդը և այլ բույսեր, որոնցից մի քանիսը պատմության գիրկն են անցել:




Դարեր առաջ Հայաստանում եղել են շագանակենու անտառներ: Դեռևս 4-րդ դարում Հունաստանում հայտնի է եղել հայկական շագանակը: Այժմ մնացել է շագանակի 5 ծառ միայն, որոնք գտնվում են Ղափանի շրջանի Շիկահող գյուղի մոտակա անտառում:

Իսկ գիտե՞ք ինչ արժեք ունի շագանակենին: Նրա կարմրա-դարչնագույն բնափայտն օգտագործում են գինու, կոնյակի և գարեջրի բարձրորակ տակառներ պատրաստելու համար, որովհետև շագանակենին հարուստ է դաբաղանյութով և կաղնուց ավելի թեթև է: Նրանից պատրաստում են թանկարժեք կահույք, ֆաներներ, պարկետ: Շագանակենու բնափայտը շատ ուշ է փտում և հայտնի է իր դիմացկունությամբ: Շագանակենու պըտուղներն ուտում են հում և եփած վիճակում, ինչպես նաև օգտագործում են հրուշակեղենի արդյունաբերության մեջ: Իսկ իբրև դեկորատիվ ծառատեսակ, նա հմայիչ է իր գեղեցիկ ծաղիկներով և համաչափ դասավորված սաղարթներով: Վերջին տարիներս փորձարկվում է շագանակենու աճեցումը Իջևանի և Նոյեմբերյանի շրջաններում:




Հին Հայաստանը հարուստ է եղել նաև սոսիի (չինարի) անտառներով: Չինարին սիրված ծառ է եղել մեզանում, որպես բարձրահասակ, ճյուղաշատ և գեղեցկատես ծառ:

Այժմ մենք սոսիի պուրակ ունենք Ղափանի Շիկահող գյուղի մոտ և Մթնաձորի կիրճում: Դա հանդիսանում է սոսիի առաջին պուրակը Անդրկովկասում: Սոսի ծառի հիանալի նմուշներ կան Մեղրիում, Խոսրովի անտառում, Դիլիջանում, Ստեփանավանում և այլ վայրերում:

Մեղրին բնության յուրահատուկ հուշարձան է: Մեղրու զարդերից մեկն է քաղաքի զբոսայգու չինարին, որի բունը չափելու համար յոթ մարդ թևերը պարզած օղակ պիտի կազմեն: Դա ամենամեծ չինարին է Սովետական Հայաստանում: Դավիթ Բեկի ժամանակ այդ չինարին 200 տարեկան է եղել:

Հայաստանի հազվագյուտ ծառատեսակներից է նաև արջատխլենին, որ հնում բավական տարածված է եղել մեզանում: Արջատխլենին աճում է Իջևանի անտառներում՝ առանձին կամ ծառախըմբերով: Երկրաբանական, վաղ դարաշրջաններից մեզ հասած այս ծառատեսակը աճում է հաճարենու, բոխենու, թղկենու և այլ ծառերի հետ միասին, կազմելով սաղարթավոր խառն անտառներ, որոնք գտնվում են ծովի մակերևույթից 1000-1800 մետր բարձրության վրա: Արջատխլենին օգտակար ու գեղեցկատես ծառ է: Նրա ամուր, բաց վարդագույն բնափայտից պատրաստում են կահույք:

Արջատխլենին ապրում է շուրջ 200 տարի: Այժըմ այդ ծառերին հանդիպում ենք հազվադեպ, այն էլ բուսաբանական այգիներում:

Հայաստանի հազվագյուտ ծառատեսակներից է արևելյան արմավենին, որը ներկայումս աճեցվում է Իջևանի շրջանի Ուզունթալա գյուղում, ինչպես նաև այլ վայրերում:

Հազվագյուտ ծառատեսակ է նաև արևելյան հաճարենին, որը տարածված է Ղափանի շրջանի Զանգեզուրի լեռնաշղթայի հյուսիս-արևելյան լանջին, ծովի մակերևույթից 1250-1550 մ. բարձրության վրա:

Բնության հուշարձան է նաև երրորդական դարաշըրջանից մնացած կովկասյան մրտավարդը, որը մասամբ գետնատարած ճյուղերով մշտադալար բույս է: Մրտավարդի մացառուտներ կան Փամբակի, Բազումի, Ծաղկունյաց լեռնաշղթաներում: Մրտավարդն ունի խոշոր, սպիտակ, երբեմն բաց վարդագույն ծաղիկներ:



Հազվագյուտ ծառատեսակներից է կարմրածառը, որը կոչվում է նաև տխտի կամ կենի: Դիլիջանում այժմ կա մոտ 10 հեկտար անտառ, որ կազմված է բացառապես կարմրածառերից: Այդ ծառերը ունեն 30-50 մետր բարձրություն, ավելի քան մեկ մետր տրամագիծ:

Կարմրածառը ապրում է ավելի քան հազար տարի: Հին դարերում այդ ծառերի բնափայտից են պատրաստվել հայկյան լայնալիճ աղեղները:

Մի ժամանակ Եվրոպայում, Հյուսիսային Աֆրիկայում, Փոքր Ասիայում, Հյուսիսային Իրանում, Ղրիմում ու Կովկասում կային հատապտղային կարմրածառի անտառներ: Ներկայումս Եվրոպայում մնացել են հատ ու կենտ կարմրածառեր կամ ծառախմբեր: Դրանց պաշարները մեծ են հատկապես Կովկասում: Ամենախոշոր պուրակը, որն ունի մոտ ութ հարյուր հեկտար տարածություն, գտնվում է Կախեթիայում: Կարմրածառի փոքրիկ պուրակներ կան նաև արևմտյան Վրաստանում և Ադրբեջանում:

Մեզ մոտ կարմրածառի պուրակներ կան Հայաստանի հյուսիսում և Զանգեզուրում: Ամենախոշորը գտնվում է Դետիկ գետի ավազանում և զբաղեցնում է 25 հեկտար տարածություն: Պուրակի կենտրոնի ծառերից յոթը 420-480 տարեկան են:


ԱՐՋԱՏԽՈՒԼԵՆԻ

Կարմրածառի երկրորդ պուրակը գտնվում է Փոլադ գետակի կիրճից 8 կիլոմետր հեռու և ունի 7 հեկտար տարածություն: Կարմրածառի պուրակ կա նաև Կոշ գյուղից 2 կիլոմետր հեռու, 5 հեկտար տարածությամբ: Այդ պուրակները գտնվում են ծովի մակերևույթից 1100-1350 մետր բարձրության վրա և միմյանց շատ նման են: Կարելի է ենթադրել, որ պուրակները հնում միացած են եղել:

Մինչև 1956 թվականը մի քանի կարմրածառեր կային Մազրենի և Շիկահողի կիրճերում, ինչպես նաև Խուստուփ լեռների հյուսիս-արևելյան կողմում և Քաջարանում: Այդ կարմրածառերը հայրենի բնության վերջին մոհիկաններն են:

Հետզհետե պատմության գիրկն են անցնում նաև սոճին և գիհին, որոնք այժմ աննշան տարածություն են գրավում հայրենի բնության մեջ:

Բնության այդ հուշարձանները պահպանվում և խնամվում են մեր պետության կողմից, Դրանք հայրենի բնության զարդն են:

*Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ*




*Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Պիոներական շեփորի տեղ
Ձմռան քամին է երգում,
Փաթիլները՝ ճերմակ, բյուրեղ,
Պար են բռնել երկնքում:
Պապանձվել է Արջաղբյուրը,
Արջի նման մտել քուն,
Փայտփորիկն էլ ծառի ճյուղին
Ասես թմբուկ է զարկում:
Թեղենիսը սեգ կատարին
Ճերմակ գլխարկ է դրել,
Ծաղիկները ջերմ հողի տակ
Կուչ են եկել, ծվարել:
Սառած գետում ձկնիկները
Կազմել են նոխ ակվարիում,
Իրենց լավ են զգում նրանք
Այդ ձյունակերտ «մետրոյում»:
Դահուկավոր տղաները
Սարից պոկվում են թափով,
Սահնակ նստած փոքրիկներն են
Իջնում ծիծաղ ու ծափով:
Ահա մեկը սլանում է
Բնի մոտով աղվեսի,
Մեկին շլդիկն է ողջունում
Ճանապարհի հենց կեսին:
Սահադաշտում երկու տղա
Չմուշկներով են մրցում,
Սառույց հո չի՞, հայելի է,
Ի՞նչ է, հանա՞ք եք կարծում:
Ծաղկաձորը ամառ-ձմեռ
Այսպես թովում է, գերում,
Փոքրիկներին ու մեծերին
Զվարթ խաղեր է բերում:



# Սովորենք դահուկներով սահել

Տ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

## ԴԱՀՈՒԿԱՅԻՆ ԱՐՇԱՎՆԵՐ

Եթե դպրոցականը բավականաչափ յուրացրել է դահուկաքայլի տեխնիկան, վերելքի և վայրէջքի տարրական միջոցները, պարզագույն դարձումները, պատրաստվում է դառնալ ցատկող, սլալոմիստ կամ դահուկավազորդ։ Բայց պակաս հետաքրքիր չէ դահուկային տուրիզմով զբաղվելը։ Դահուկային արշավին մասնակցելը ձեզնից չի պահանջում մեծ վարպետություն, ինչպես, ասենք, դահուկավազքը։ Կարևոր է միայն, որպեսզի պատանի տուրիստը կարողանա դահուկներով լավ քայլել և լինի բավական դիմացկուն։

Տուրիստական այն խմբում, որն ունի մեկ ղեկավար, պետք է ընդգրկվեն 10—12-ից ոչ ավելի դահուկորդներ։ Մեկօրյա և երկօրյա արշավների ժամանակ երթուղին չպետք է անցնի 15—30 կիլոմետրից։ Խմբում կարող են լինել և՛ տղաներ, և՛ աղջիկներ։ Զորսօրյա և ավելի երկարատև արշավների կարող են մասնակցել լավ նախապատրաստված դահուկորդները, որոնք մի քանի անգամ մասնակցել են մեկօրյա և երկօրյա արշավների։

Արշավի յուրաքանչյուր մասնակից պետք է ունենա.

1. Կանոնավոր դահուկներ, լավ ամրակապերով։ Ձողափայտեր՝ սուր ծայրերով և լավ ամրացված օղակներով։

2. Ուսապարկ, որի մեջ պետք է լինեն տրիկոտաժե սպիտակեղեն, բրդյա նասկիներ, չուստ (սենյակում հագնելու համար), օճառ, ատամի փոշի, սրբիչ, պարան, մի քանի տուփ դահուկային քսուք (տարբեր եղանակների համար), նախաճաշ (կարագ և միս), 10—12 կտոր շաքար, բաժակ և գդալ։

3. Պետք է հագնել մաքուր սպիտակեղեն՝ տաք կտորից տրուսիկ, երկու զույգ բրդյա նասկի, լավ յորացրած կոշիկներ, բրդյա բաճկոնակ և նեղ շալվար, տաք կիսավերարկու, ականջավոր գլխարկ։

Ընդհանուր օգտագործման գույքը և մթերքները բաշխում են արշավի բոլոր մասնակիցների միջև այն հաշվով, որպեսզի յուրաքանչյուրը վերցնի 5 կիլոգրամից ոչ ավելի։

Պետք է վերցնել հետևյալ գույքը և մթերքները.

1. Ճանապարհին դահուկները և ձողափայտերը վերանորոգելու համար՝ բիզ, պտուտակահան, հարթաշուրթ աքցան, պտուտակներ, պահեստային ամրակապեր, կաշվե գոտիներ՝ ամրակապերի համար (2—4), պահեստային օղակներ՝ ձողափայտերի համար (2—4), ձողափայտերի սուր ծայրեր (2—4), դանակ, փոքր մեխեր, մուրճ։

2. Եթե երթուղին անցնում է անտառով՝ փոքրիկ կացին և մի քանի տուփ լուցկի։

3. Լուսանկարչական ապարատ։

4. Փոքրիկ դույլ՝ կերակուր եփելու համար։

5. Մթերքներ՝ հաց (յուրաքանչյուրին օրական 500 գրամ), աղ, շաքար, թեյ, խտացրած կաթ, ձավար, կարտոֆիլ։

6. Շարժական դեղատուփ։

Արշավի ղեկավարը մասնակիցների միջև աշխատանքի բաժանումը պետք է կատարի այնպես, որ նշանակված տեղը հասնելուն պես յուրաքանչյուրն իմանա իր անելիքը։ Նա նշանակում է նաև խմբի ավագին, որը շարժվում է շարքի վերջում, օգնություն է ցույց տալիս տուժածներին, օգնում է նորոգելու վնասված դահուկները և այլն։ Անպայման պետք է ընտրել սանիտար, որը տանում է դեղատուփը և ցույց է տալիս առաջին օգնություն։ Հարկավոր է ընտրել լուսանկարիչ և թղթակից՝ արշավի օրագիրը լրացնելու համար։

Փոքրագույն ցրտահարության դեպքում տվյալ տեղը անմիջապես շփեցեք ձնով կամ բրդյա չոր կտորով, իսկ հենց առաջին կանգառի ժամանակ ցրտահարված տեղի համար պատրաստեցեք տաք լոգանք։

Որպեսզի երեխաները չխախտեն արշավի կանոնները, պետք է սահմանել շարքի շարժման որոշակի կարգ։ Առջևից 2—3 հոգու հետ գնում է ղեկավարը։ 300—500 մետրից հետո առջևից գնացողները դուրս են գալիս շարքից, իրենցից առաջ են թողնում ամբողջ շարքը, իսկ իրենք գնում են վերջից։ Այդպես կատարվում է յուրաքանչյուր 300—500 մետրից հետո։

## ԵՐԹՈՒՂՈՒ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆԸ

Ես անհամար քանակությամբ արշավների եմ մասնակցել և կարող եմ խորհուրդներ տալ երթուղին ընտրելու գործում և նշել մի քանի երթուղիներ։

Երթուղի № 1. Լենինական — Ղուկաս-

1 ան — Բոգդանովկա։ Եթե խճուղին բաց է, ապա կարելի է վաղ առավոտյան մեքենայով մեկնել Բոգդանովկա և նախաճաշից հետո դահուկներով ետ վերադառնալ՝ առաջին օրը մինչև Ղուկասյան, իսկ երկրորդ օրը՝ Լենինական։ Ընդամենը 2 օր։

Երթուղի № 2. Լենինական—Սպիտակ—Կիրովական և գնացքով՝ Լենինական։ Արշավի տևողությունը՝ 3 օր։

Երթուղի № 3. Լենինական—Սպիտակ-Ալագյազ (Ապարանի շրջան) — Արթիկ — Լենինական (վերջին հատվածը կարելի է անցնել գնացքով)։ Արշավի տևողությունը, էքսկուրսիաների հետ (Սպիտակի շաքարի գործարան, Արթիկի քարհանքերը) 5 — 6 օր։

Երթուղի № 4. Կիրովական—Սպիտակ—Ապարան — Հանքավան — Մայմեխ — Կիրովական։ Տևողությունը՝ 4 — 6 օր։ Կարելի է արշավը կազմակերպել հակառակ ուղղությամբ։

Երթուղի № 5. Կիրովական—Մայմեխ—Հանքավան — Աթարբեկյան—Ծաղկաձոր—Հրազդան—Երևան (վերջին հատվածը գնացքով)։ Տևողությունը՝ 6 օր։

Երթուղի № 6. Հրազդան—Աթարբեկյան — Ծաղկաձոր — Հանքավան — Աթարբեկյան—Հրազդան։ Տևողությունը՝ 3 — 4 օր։

Երթուղի № 7. Երևան — Հրազդան—(գնացքով) — Հանքավան — Ապարան—Աշտարակ — Երևան։ Տևողությունը՝ 5 — 6 օր։

Երթուղի № 8 Երևան — Հրազդան—(ավտոմեքենայով) — Սևան — Լուսավան — Ծաղկաձոր —Հրազդան—Երևան։ Տևողությունը՝ 6 — 8 օր (Ծաղկաձորում երկարատև կանգառ)։

Տուրիստական արշավի ղեկավարը պետք է հաշվի առնի ամենից գլխավորը՝ բազմօրյա արշավի կարելի է վերցնել միայն ֆիզիկապես պատրաստված և դիմացկուն երեխաներին, որոնք արշավից հետո տուն կվերադառնան վառ տպավորություններով, առույգացած և կոփված։



## ՈՒՍՈՒՑՄԱՆ ԵՐԿՐՈՐԴ ՓՈՒԼԸ

### ա) Արգելակումը և դարձումները ընթացքի ժամանակ

Վայրէջքի ժամանակ արգելակման հիմնական եղանակները հանդիսանում են արգելակումները հենումով և խոփով։ Հենումով արգելակումն օգտագործվում է փոքր և միջին թեքություն ունեցող լանջերում։ Արգելակումն սկսելու համար հարկավոր է մարմնի ծանրությունը դահուկների առջևի մասից տեղափոխել հետևի մասը։ Միաժամանակ դահուկների առջևի մասը պետք է բացել այնպես, որպեսզի ծայրերը հետևի մասի նկատմամբ անկյուն կազ-



մեն։ Դրա շնորհիվ դահուկների ներսի մասի եզրերը «սանրում են» ձյան մակերեսը՝ առաջացնելով արգելակում։ Դահուկների ծայրերը պետք է պահել նույն մակարդակի վրա (տես № 1 նկարը)։

Խոփով արգելակումը պետք է սկսել աստիճանաբար, հենումը համաչափ կերպով բաշխելով երկու ոտքերի վրա։ Արգելակման այս եղանակը պետք է օգտագործել հարթ լանջերում, որտեղ չկան փոսեր և առուներ։ Արգելակման համար ծնկները մոտեցնում են իրար, իսկ դահուկների ետնամասերը հեռացնում։

### բ) Դարձումը հենումով

Դարձման այս եղանակը կիրառվում է ոչ շատ թեք լանջով դանդաղ վայրէջքի ժամանակ, սովորաբար այն դեպքում, երբ ցանկանում ենք թեք վայրէջքից անցնել ուղիղ վայրէջքի։ Այդ դարձումը կատարելու համար դահուկորդը մի կողմ է տանում արտաքին կողմի դահուկի (դարձման նկատմամբ) ետնամասը, միաժամանակ հենվելով, որպեսզի դահուկների ծայրերը չհեռանան միմյանցից և ծնկները մոտենան իրար։ Դարձված և դահուկորդի մարմնի ծանրությունից ազատված արտաքին դահուկն սկսում է իր ներսի կողմի եզրով քերել ձյունը։ Եթե այժմ դահուկորդը ներսի կողմի դահուկը ձյան վրա դնի ավելի տափակ, իսկ արտաքին դահուկն ավելի ուժեղ ծանրաբեռնի, ապա ուղղագիծ շարժումը կխախտվի և դահուկները սահուն կերպով դարձում կկատարեն։ Դարձման ժամանակ ավելորդ շարժումներ (օրինակ, մարմնի ծանրության փոխադրում) չպետք է կատարել։ Հենումով դարձումը պետք է սկսել հենումով արգելակումը յուրացնելուց հետո։

Հենումով դարձման վարժությունները պետք է կատարել փոքր թեքության լանջի վրա. սկզբում կանգնած վիճակում, ապա դանդաղ շարժման ընթացքում։ Դարձման կատարելագործումը տեղի է ունենում աստիճանաբար բարդացող պայմաններում՝ ավելի մեծ թեքության լանջի վրա և մեծ արագության ժամանակ։

### գ) Դարձումը խոփով

Դարձման այս եղանակը կատարվում է խոփով արգելակման դրությունն ընդունելուց հետո, երբ դահուկների ծայրերը մոտեցված են իրար, իսկ հետևի մասերը՝ բացանջատված։ Դեպի ձախ դարձում կատարելու համար դահուկորդը մարմնի ծանրությունը փոխադրում է արտաքին՝ աջ դահուկի վրա։ Դեպի ձախ դառնալու համար կատարվում է հակառակը։ Որպեսզի դարձումը հետը կատարվի, ներսի կողմից դահուկը պետք է տափակ նստի ձյան վրա, իսկ արտաքինը թեքվի եզրի վրա։

Դարձման այս եղանակը պետք է սովորել խոփով արգելակումը յուրացնելուց հետո։

### դ) Վայրէջքի հաղթահարումը

Հարկավոր է ընտրել 150 — 160 մետր տարածությամբ անփոփոխ տարալանջ, որի վրա լինեն թեք հատվածներ, զառիվայրեր և փոսեր։

ա) Զառիվայրի հաղթահարումը

տես № 2 նկարը): Մոտենալով զառիվայրին՝ հարկավոր է սահուն կերպով ցածր կեցվածք ընդունել (ծնկները ծալել): Զառիվայրն անցնելու պահին պետք է ընդունել հիմնական կամ անգամ բարձր կեցվածք (կանգնել), միաժամանակ մարմինը թեքելով առաջ (ինչքան թեք է զառիվայրը, դահուկորդն այնքան ավելի շատ պետք է ուղղվի, չմոռանալով մարմինը առաջ թեքել):

բ) Թմբի հաղթահարումը (տես № 3 նկարը):

Նախքան թմբին հասնելը՝ ընդունել բարձր կեցվածք, թմբի վրա իջնել՝ ցածր կեցվածքի, թմբից




հետո կրկին ընդունել բարձր կեցվածք և աստիճանաբար անցնել հիմնական կեցվածքին:

գ) Փոսի հաղթահարումը (տես № 4 նկարը): Նախքան փոսին հասնելը, հարկավոր է ընդունել հիմնական կամ ցածր կեցվածք (ինչքան ավելի խորն է փոսը, այնքան ավելի պետք է իջնել նախքան նրան հասնելը), փոսի մեջ իջնելու պահին ուղղվել, իսկ փոսից դուրս գալու ժամանակ կրկին ընդունել հիմնական կամ ցածր կեցվածք:

Միայն վերը նշված բոլոր վարժությունները լավ յուրացնելուց հետո կարելի է անցնել փոքր տրամպլիններից ցատկելուն (միայն տղաները):

## ԴԱՀՈՒԿՈՐԴՆ ԱՄՌԱՆԸ

Ի՞նչ պետք է անի դահուկորդը, որպեսզի ձմռան ընթացքում ձեռք բերածը ամռանը չմոռանա:

Ամենից գլխավորը առավոտյան մարմնամարզությունն է: Այն պետք է կատարել ամբողջ տարվա ընթացքում: Որպեսզի միօրինակ վարժությունները ձանձրալի չդառնան, կարելի է յուրաքանչյուր շաբաթ նոր վարժություններ ընտրել: Շատ կարևոր է ամբողջ մարմնի և հատկապես փորի և ոտքերի մկանների զարգացումը: Ոտքի մկանների ամրապնդման համար կարելի է կքանիստեր կատարել մեկ կամ երկու ոտքերի վրա: Փորի մկանների զարգացմանը նպաստում են մեջքի վրա պառկած վիճակում կատարվող բոլոր վարժությունները: Ձեռքերի մկաններն ուժեղացնելու համար հարկավոր է կցագնդերով (հանտելներ) վարժություններ կատարել:

Տանը կամ պիոներական ճամբարում հարկավոր է հաճախակի մասնակցել թեթև ատլետիկական կրոսների, դուրս գալ հետիոտն տուրիստական արշավների:

Հենց առաջին ձյան հետ պատանի դահուկորդը պետք է կանգնի դահուկների վրա: Առաջին պարապմունքը ցույց կտա, թե նա ինչքանով է պատրաստ նոր մարզումներին և մրցումներին:

Պետք է հիշել, որ ամռան ընթացքում լավ նախապատրաստվելը ձմեռային սպորտային սեզոնի հաջողությունների հիմքն է հանդիսանում:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

**Այս համարի հետ տրվում է հավելված՝ հոկտեմբերիկների համար:**




„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 09834: Պատվեր՝ 53: Տպաքանակ՝ 14400: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 30/I 1963 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:

Գինը 20 կ.




*Սիրե՛ք, մանուկնե՛ր, ամեն ժամանակ*
*Խելքի ու մտքի այս նոր ձեռնարկը.*
*Ձեզ չի պատմելու ոչ մի ծիծեռնակ,*
*Ինչ՝որ պատմում է այս «Ծիծեռնակը».*

# ԾԻԾԵՌՆԱԿ




ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. Հ. ՄԻՆԱՍՅԱՆԻ

Ալիկը վերջերս ծուլացել էր։

— Լվացվի՛ր, որ նախաճաշես, — ասում էր մայրիկը։

— Լվացվել եմ, — ասում էր Ալիկը։

— Այդ ե՞րբ ես լվացվել, որ ես չեմ տեսել։

— Դե, երեկ, էլի՛, քնելուց առաջ...

Բայց միայն լվացվելը չէր։ Մայրիկը սպաս էր եփում, Ալիկը չէր ուտում։

— Ես սպաս չե՛մ սիրում, — ասում էր։

— Իսկ ի՞նչ կուզես։

— Սիսեռով ապուր։

Մայրիկը հաջորդ օրը սիսեռով ապուր էր եփում։

— Էս ի՞նչ է, էլի՞ սիսեռով, — տըրտընջում էր Ալիկը, — ես մակարոնով ապուր եմ սիրում։

Երեկոյան մայրիկը լողացնում էր Ալիկին։ Համարյա գոլ ջուր էր լըցնում վրան, իսկ Ալիկը ճչում էր.

— Վա՜յ, այրվեցի, վա՜յ, — և ուզում էր դուրս նետվել լողարանից։

Ուղղակի անտանելի տղա էր դարձել Ալիկը։

Բայց մի օր կատարվեց իսկական հրաշք։

Ալիկը առավոտյան արթնացավ, անմիջապես պատշգամբ դուրս եկավ, ցատկոտեց պարանով երկու, ապա մեկ ոտքի վրա, հետո գնաց լողասենյակ։ Լվացվեց, սանրվեց, մեծ հաճույքով հաց ու կարագ կերավ, որից նախորդ օրերին հրաժարվում էր, կերակրեց նաև թռչնակներին ու ձկնիկներին, հետո վերցրեց թուղթ ու գունավոր մատիտներ և սկսեց նկարել։

Մայրիկը զարմացել էր։ Այս ի՞նչ է պատահել Ալիկին։ Հրա՞շք է, ի՞նչ է։

Իսկապես, հրաշքի էր նման։ Նկարելուց հետո Ալիկը թղթերն ու մատիտները ոչ թե սեղանին և հատակին թափված թողեց, այլ հավաքեց ու դասավորեց պահարանում, մայրիկից

*բակ գնալու թույլտվություն խնդրեց, խաղաց ու, որ երբեք չէր պատահում, հագուստը մաքուր տուն եկավ։ Դա դեռ բոլորը չէ։ Մայրիկը սպաս էր եփել, և Ալիկը կերավ մեծ բավականությամբ, առանց քրթմնջալու, իսկ վերջում նույնիսկ ասաց.*

*— Ի՜նչ լավն էր, շնորհակալություն, մայրի՛կ։*

*Մայրիկը ավելի էր զարմանում։*

*Իսկ երեկոյան Ալիկը հանգիստ նստել էր լողարանում և լողանում էր։ Ո՛չ ճչում էր, ո՛չ էլ փորձում դուրս նետվել, միայն աչքերը ամուր փակել էր, որ օճառի փրփուրը չմզկըտացնի։*

*Դա արդեն այնքան անսովոր էր ու զարմանալի, որ մայրիկն այլևս չըհամբերեց ու, երբ Ալիկը անկողնում պառկած էր, հարցրեց.*

*—Ալի՛կ ջան, այսօր դու այնքա՜ն լավն էիր, այնքա՜ն խելոք, այդ ինչի՞ց էր։*

*— Դա իմ գաղտնիքն է —գովեստից շառագունած ծիծաղեց Ալիկը։*

*— Ի՞նչ գաղտնիք է, Ալի՛կ։*

*— Ես Ալիկը չեմ, ես Շողիկն եմ։*

*— Ինչպե՞ս թե Շողիկն ես։*

*Ու թեև սենյակում ոչ ոք չկար և քույրիկը՝ Սաթիկն արդեն քնած էր, բայց Ալիկը բարձրացավ տեղից ու մայրիկի ականջին շշնջաց իր գաղտնիքը։*

*Եվ գիտե՞ք ինչ գաղտնիք էր դա։*

*Պարզվեց, որ նախորդ օրը Սաթիկը նրա համար մի պատմվածք է կարդացել խելոք աղջիկ Շողիկի մասին, որը միշտ լսում է մայրիկին, և Ալիկը որոշել է այսուհետև ոչ թե Ալիկ լինել, այլ՝ Շողիկ։*

# ԵՍ ԿԱՐԵՑԻ՝ ՍՈՎՈՐԵՑԻ

Մ. ԹԱՐՅԱՆ

Ես դպրոցում
Սանիտար եմ,
Չունեմ թևկապ՝
Պիտի կարեմ:

Առա մկրատ,
Ասեղ ու թել,
Սկսեցի՝
Ինքս կարել:

Ես ձևեցի,
Ես կարեցի,
Ձևել, կարել
Սովորեցի:



Նկ. Մ. ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ՄԵՆՔ ԳՆԱՑԻՆՔ ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶ

Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ



Մայրիկն արդեն գնաց գործի,
Տատն էլ ձեռնոց պիտի գործի,
Հետո պիտի ճաշ պատրաստի
Ու մի քիչ էլ հանգիստ նստի։
— Մենք էլ գնանք մանկապարտեզ, —
Որոշեցինք Արան ու ես, —
Գնանք այնտեղ երգենք, պարենք,
Որ տատիկին չխանգարենք։
— Բարով եկաք, — մեզ ասացին,
Լայն դռները մեր դեմ բացին,
Ուղիղ դեպի դահլիճ տարան,
Ուրախացանք ես ու Արան։
Ուսուցչուհին երգի-պարի
Մեզ հայացքով նայեց բարի,
Ինձ խաղալու հրավիրեց,
Արայիկին գրկեց, սիրեց։
Իսկ երբ ճաշի սեղան բացին,
Մեզ համար էլ ճաշ բերեցին։
— Մի՛ ամաչեք, — ասին, — կերե՛ք,
Բայց թե վաղը դիմում բերեք,
Թե ուզում եք սաներ դառնալ,
Մեզ հետ պարել, ուրախանալ։ —
Երեկոյան եկանք մենք տուն,
Տատին տեսանք տխուր-տրտում,

Էլ ո՛չ ճաշ էր նա պատրաստել,
Ո՛չ իր տեղում հանգիստ նստել։
Գլխին առած գլխաշորը,
Մեզ էր փնտրել ամբողջ օրը։
Մեր տատիկին շատ խղճացինք,
Մեր արածը մենք զղջացինք.
Պետք է տանը իմաց տայինք,
Հետո միայն տեղ գնայինք։



Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ






Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Ամբողջ դասարանում բոլորից վատ Վաչիկն էր գրում. չարչարվում էր, չարչարվում, բայց տառերը ոչ մի կերպ չէին ուզում գեղեցիկ երևալ։ Վաչիկը շարունակ փոխում էր գրչածայրերը, թանաքամանի մեջ նոր թանաք էր լցնում, բայց... «Ն»-ն մնում էր ուղտի պես վիզը ծուռ, մեծատառ «Զ»-ն «2»-ից ոչնչով չէր տարբերվում, իսկ «Ջ»-ն, ասում էին, որ նըման է ապակիներից մեկը կոտրած ակնոցի։ Երեխաները անհանգստացած շուռումուռ էին տալիս Վաչիկի տետրը, խորհուրդներ էին տալիս նրան, բայց օգնել չէին կարողանում։

— Ամենագլխավորը «ա» տառն է, այն էլ ճաղը կոտրած ցանկապատի է նման,— մի անգամ ասաց Վաչիկի ընկերը՝ Հայկը, — սպասի՛ր, Վաչիկ ջան, «ա» տառը ես գրեմ։

Ասաց ու գրեց «ա»։

-— Իսկ «է՞»-ն, — հարցրեց Էմման, — քո կարծիքով «է»-ն գլխավոր տառ չի՞. Վաչիկի «է»-ն կարծես պոչը կոտրած շերեփ լինի. «է» տառը ես կգրեմ։

- Երեխանե՛ր, հապա մի «Ծ»-ին նայեցեք. սա ի՞նչ «Ծ» է որ, — ասաց Ծովինարը և Վաչիկի տետրում մեծատառ «Ծ» գրեց։

— Մի սրա՞նց նայեցեք, — ծիծաղեց Զորիկը, — կարծես Վաչիկը միայն «ա», «է» և «Ծ» տառերն է վատ գրում. իսկ «Ջ»-ն...

. Ու այսպես ամեն մեկը Վաչիկի տետրում գրեց մի տառ։

Երեխաները գրեցին ու... զարմանքից քարացան։ Բայց բոլորից շատ զարմացավ ընկեր Աննան.

— Ա՜յ քեզ բա՜ն... Վաչիկ, այս ո՞վ է տետրդ այսպես «զարդարել» — հարցրեց նա։

Վաչիկը ոչինչ չասաց. նա գլուխը կախեց ու մնաց կանգնած։

Երեխաները վախեցած միմյանց նայեցին, իսկ Համմիկը մոտեցավ ընկեր Աննային և ցածր ձայնով ասաց.

— Մե...մենք ուզում էինք օգնել Վաչիկին, որ նա էլ լավ գրի։ Սեդան ասում է, որ եթե Վաչիկը լավ չգրի, նորից նըրան մանկապարտեզ կտանեն։ Բա մեղք չէ՞։



Նկ. Ռ. ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Ընկեր Աննան նայեց երեխաներին. նայեց ու... ժպտաց... Երեխաները նայեցին նրան ու... իրենք էլ ժպտացին, ուրախացան. ուրեմն ոչ մի վատ բան չի կարող լինել, երբ ժպտում է ընկեր Աննան:

— Դուք լավ, շատ լավ ընկերներ եք,— ես Վաչիկին ոչ մի տեղ չեմ տանի, մենք բոլորս կօգնենք, որ Վաչիկն էլ լավ գրի:

* * *

Դասերից հետո երեխաները գնում էին տուն, իսկ Վաչիկը մնում էր դասարանում և ընկեր Աննայի հետ տառեր էր գրում:

Տանը նրան օգնում էին Հայկն ու Էմման: Նրանք հետևում էին, որ Վաչիկը տետրից թերթեր չպոկի:

— Ի՞նչ անենք, որ վատ ես գրել,— ասում էր Հայկը,— մի քիչ էլ որ չարչարվես, գեղեցիկ կլինի: Միայն թե դու մաքուր գրիր,— խորհուրդ էր տալիս Էմման,— տե՛ս, իմ տետրում ոչ մի ջնջում չկա:

Վաչիկը նայում էր իր ծուռ ու տգեղ տառերին և աշխատում էր լավ գրել:

— Ըհը՛, «ա»—ն ուղղվեց,— ուրախանում էր Էմման:

— «Վ»—ն էլ ուղղվեց,— տեղից ցատկում էր Հայկը,— ընկեր Աննան կհավանի, անպայման կհավանի:

Իսկ ընկեր Աննան իրոք որ հավանում էր. նա շարունակ գովում էր Վաչիկին:

— Մի քիչ էլ, Վաչիկ, մի քիչ էլ, և դու մյուսների նման կգրես: Դասարանում գրավոր աշխատանքի ժամանակ Ծովինարը շարունակ փսփսում էր.

— Կամաց գրիր, Վաչիկ, կամաց:

Ուրիշ անգամ Վաչիկը կհասցներ նրան՝ մեղվի պես անընդհատ բզզալու համար, բայց արի ու տես, որ Ծովինարի բզզոցը օգնում էր նրան. նա իսկույն ետ էր քաշվում ու սկսում էր գրել դանդաղ, առանց շտապելու, և տառերը դրանից ավելի գեղեցիկ էին ստացվում:



ԳՐԻԳՈՐՅԱՆ ՍՏԵՓԱՆ (Լենինական, 7 տ.) «ՏՈՒՆ»

## ՈՐՏԵ՞Ղ Է ԱՅԲԲԵՆԱՐԱՆԸ

*ԳՐԻՑԿՈ ԲՈՅԿՈ*

— Որտե՞ղ է քո դասագիրքը:
— Այնտեղ է, իմ պայուսակում:
— Իսկ որտե՞ղ է պայուսակը:
— Իմ սեղանի մեծ դարակում:
— Քո դարակից վերցրնեիր:
— Իմ դարակը ամուր փակվեց:
— Թող դարակը բաց անեիր:
— Բայց բանալի չունեի ես:
— Իսկ որտե՞ղ է քո բանալին:
— Այնտեղ, իմ նոր պայուսակում:
— Իսկ որտե՞ղ է պայուսակը:
— Իմ սեղանի մեծ դարակում:

*Թարգմ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ*

## ՁՄԵՌ Է ԿՐԿԻՆ

ԳՈՒՐԳԵՆ ՓԻԼԹԱԿՅԱՆ

Ձմեռ է կրկին մեր լեռնաշխարհում,
Ձյունը ծածկել է սարերը նորից.
Փոքրիկ սկյուռը ծանոթ անտառում,
Կեղև է կրծում ծառի ճյուղերից:
Էլ չեն դայլայլում հավքերը խնդուն,
Վաղուց չվել են երկրները տաք.
Բայց քաղցած մի ծիտ ծառի փչակում
Ծիվ-ծիվ է ասում օրնիբուն մենակ:
Ձմռան զգեստ են ծառերը հագել,
Ամպի քողի տակ լեռներն են խոկում,
Սառած գետի մոտ գյուղն է քուն մտել,
Առած իր վրա ճերմակ վերարկուն:

## ԱՅ ՍԻՐՈՒՆԻԿ ՆԱՊԱՍՏԱԿ

*Ս. ԽԱՐԱՋՅԱՆ*



— Ա՛յ սիրունիկ նապաստակ,
Հիմա սառած անտառում,
Ձմռան ու ձյան ոտքի տակ
Դու ինչպե՞ս ես կեր ճարում:

— Անտառի մեջ դարավոր,
Կաղնիների տակ ամուր,
Ճարում եմ ես ամեն օր
Չոր տերևներ ու մամուռ:

Չեմ գոհանում տերևից,
Ես գտնում եմ լավ սունկեր,
Ինձ օգնում է վերևից
Ծառաբնակ մի ընկեր:

Այդ սկյուռն է իմ բարի
Ծառին երգում ու ծափում
Եվ կատարից մի ծառի
Չոր կաղին է ցած թափում:

Ծվծվում է քաղցրաձայն.
— Որքան կուզես կեր ու կեր,
Մինչև վերջը այս ձմռան
Ես քեզ կօգնեմ, իմ ընկեր:



*Նկ. Ս. ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ*



Պինգվին Օրոր-Շորորը շատ է տխուր։ Ինչո՞ւ է այդպես հոնգուր-հոնգուր լալիս։ Կարոտել է իր ընկերներին ու բարեկամներին՝ մյուս պինգվիններին։ Քոթոթ-Արջուկը օգնության է կանչում իր հեռավոր բարեկամներին։

Սովետական Միությունից գալիս է մի կարմիր հրթիռ։ Ցած են իջնում պատիկ-ճատիկ տիկնիկները։

—Օրոր-Շորորին մենք կտա-





նենք իր բարեկամների մոտ,— ասում են տիկնիկները։

Պինգվինը շատ է ուրախանում։ Երեխաները տաշտակը տանում են հրթիռի մոտ։ Ի՜նչ ծանր է։ Նրանք և Արջուկը Մոսկվայի երեխաների համար նվերներ են տալիս։

—Ցտեսություն, սիրելի Օրոր-Շորոր, ցտեսություն, — ձայն են տալիս բոլորը։—Ողջույն տար սովետական երեխաներին, քո սի-



ռելի եղբայր պինգվիններին, բո-
լոր, բոլոր երեխաներին։
Թափահարում են թաշկինակ-
ները, թափահարում են ձեռքները,
և հրթիռը արևի տակով սլանում
է քամուց ավելի արագ։
Ահա հրթիռը վայրէջք է կա-
տարում Մոսկվայի կենդանաբա-
նական այգում։ Օրոր-Շորորը
գրկախառնվում է իր բարեկամ-



ների հետ։ Ինչպե՜ս են ուրախանում պինգվինները, որ նորից միասին են։ Հրճվանքից բոլորը երգում են ու պարում։

Մոսկվացի երեխաները, երբ գնում են կենդանաբանական այգի, անպայման այցելում են նաև պինգվիններին։ Դեռ հեռվից նրանց ականջին է հասնում Օրոր-Շորորի ուրախ երգը։

Գերմանական «ԲՈՒՄԻ» ամսագրից







ՋԻՆԱՆՅԱՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆ

(Երևան, 5 տ.)

«Ձի», «Եղնիկ», «Մարդ» (պլաստիլին)

# ՄՐՋՅՈՒՆԸ ՃԱՄՓԱ Է ԳՆՈՒՄ

ԼՉԵԶԱՐ ՍՏԱՆՉԵՎ

Նկ. Ֆ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ջանասեր մրջյունը հատիկ հավաքեց, լցրեց փոքրիկ կնեպի մեջ ու պատրաստվեց ճամփա ելնելու: Արդյոք ո՞ւր էր գնալու այդպես մեն-մենակ, փոքրիկ կնեպն առագաստանավ սարքած:

Ծամփա ընկավ մրջյունն ու դեռ գետը չհասած, հանդիպեց ճոռան ծղրիդին.

— Մրջյո՛ւն ջան, մրջյո՛ւն, ես շատ քաղցած եմ, ինձ մի գդալ հատիկ տուր, փոխարենը մի լավ երգ կերգեմ քեզ համար,— այս ասելով ծղրիդը մեկնեց իր նախշուն թասը:

— Քեզ ո՞վ ուղարկեց ինձ մոտ, ես հատիկ չունեմ ուրիշին տալու,— չոր-չոր պատասխանեց մրջյունն ու երկու ծղոտիկ-թիակները թևի տակ առնելով, շտապեց շուկա:

Բայց հանկարծ չար քամիներ փչեցին, և ուժեղ փոթորիկ բարձրացավ: Կնեպ-նավակը շուր




# ԻՄ ԼԱՎ ՏԻԿՆԻԿԸ

ՆԻՄԱ ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆ

Տիկնիկս վաղ արթնացել,
Թաթիկները լվացել.
Լուռ նստել է անկյունում,
Խոսքիս ականջ է դնում.
— Մինչև հաշվեմ չորս, հինգ,
վեց,
Տիկնի՛կ, պիտի սանրվես,
Կապես գոգնոցը քո հին,
Մոտիկ նստես սեղանին։
Կաթը խմենք ես ու դու
Հետո գնանք խաղալու։





Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

---

եկավ, հատիկը թափվեց, իսկ խեղճ ու անօգնական մրջյունը մնաց ահեղ ալիքների բերանում։

— Օգնեցե՛ք, օգնեցե՛ք,—վախեցած գոչում էր նա, բայց լսողն ո՞վ էր։

— Մրջյունը հուսահատ գալարվում էր խենթ ջրերի մեջ։ Ուժերը գնալով նվազում էին։ Գետափին երևում էր իր տնակը, բայց ի՞նչ օգուտ. նա հիմա կխեղդվեր այստեղ ու վերջ։

Այդ րոպեին ծղրիդնափից տեսավ փոքրիկ մրջյունին, տեսավ ու խղճաց.

— Վա՜յ, մրջյո՛ւն ջան, այս ի՞նչ պատահեց քեզ,—ասաց նա ու անմիջապես մի ամուր



եղեգնիկ ճարելով, կախվեց վրայից ու թեքեց այնքան, մինչև որ մի ծայրը հասավ ջրի մեջ։

— Բռնի՛ր այս եղեգնից,— ասաց նա մրջյունին։

Իսկ մրջյունը օրորվում էր ալիքների մեջ ու ողբագին լաց լինում.

— Վա՜յ, մայրի՜կ ջան, խեղդվո՜ւմ եմ։

Դե կախվիր այս եղեգնից ու կփրկվես,—այդ ասելով ծղրիդը զգուշանակի նման օրորվեց բարալիկ եղեգնի վրա. ծողիկը վեր բարձրացավ, մրջյունն էլ հետը։



Մրջյունն ափ դուրս եկավ ու երջանիկ գոչեց.

— Ծղրի՜դ սիրելի, դու իմ լավ բարեկամ, այսուհետև այնքան ժամանակ, ինչքան ես կենդանի եմ, հավասար բաժին կանենք իմ ունեցած հատիկը։ Դո՛ւ, ճիշտ է, գործ չես անում, բայց փոխարենը լավ երգ ես ասում։

Բուլղարերենից թարգմ.
Մ. ԹԵՐՋՅԱՆ

# ԵՐԿԱՐԱԿԱՆՋ - ԾԱՆՐԱԿԱՆՋԸ

*ՑՎԵՏԱՆ ԱՆԳԵԼՈՎ*
*(Բուլղար բանաստեղծ)*

Լուսնի սառցե եղջյուրը
Թառեց ամպերին,
Իսկ անտառում ոռնում է
Բքաշունչ քամին։

Մայր շլդիկը ճագերին,
Ներս տարավ փչակ.
Դրսում ցուրտ է ճքճքան,
Իսկ փչակում՝ տաք…

Ձագուկներին ահա նա
Ընթրիք է տալիս.
Նրանք կրծում են ծառի
Ճիվերն հյութալի։



Ավագ ձագուկը, մի տե՛ս,
Դժգոհ է կերից.
Նա ուզում է ճաշակել
Խոտեր բուրալից։

Մայրը հարցնում է նրան.
— Իսկ որտեղի՞ց խոտ.
Չէ՞ որ ձյունով են ծածկվել
Անտառ ու արոտ... —

Երկարականջ ձագուկն է
Փքվում ինքնիրեն.
«Ես կգնամ, ձյան տակից
Թարմ խոտ կբերեմ...

Կուտեմ, որքան ուզենամ,—
Որոշեց այսպես.—
Լուսադեմին կշտացած,
Փչակ կգամ ես»...

Ու դուրս գալով փչակից,
Մտավ նա անտառ.
Ձյունն է ծածկել ամեն ինչ՝
Թուփ, գետակ ու ծառ։

Տեսնում է նա մթի մեջ
Ինչ-որ փայլուն բան.
Բայց թե ի՞նչ է, այդ արդեն
Հայտնի չէ նրան։

Երկարականջ շլդիկը
Ցատկեց համարձակ.
Այդ նույն պահին նա տեսավ
Մի զույգ վառ կրակ...

Քիչ մոտեցավ, նկատեց
Իր դեմ մի աղվես.
Ահից լեղին ջուր կտրեց.
«Այդ ի՞նչ արի ես...»

Եվ աղվեսը շլդիկին
Հո՛պ. իսկույն ճանկեց...
Բայց շլդիկը ճարպիկն էր,
Մի կերպ ազատվեց...

Ու փախչում էր քամու պես,
Դողացող սրտով,
Հասավ նա տուն, մտավ ներս
Պատռված մորթով...

Մայրը իսկույն փոքրիկին
Անկողին դրեց...
Ու վախեցած հիվանդին
Դեղորայք տվեց...

Ջերմաչափը թևի տակ,
Ծանրականջն ահա...
Էլ նա առանց մայրիկի
Երբե՛ք դուրս չի գա։

*Ռուսերենից թարգմ.*
ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ



## ԳՐԱԿԱ՛Ն ԽԱՉԲԱՌ–ԺԱՄԱՑԱԳԻՐ

*1. Արևմտահայ բանաստեղծ, որը զոհ դարձավ թուրքական յաթաղանին: 2. 19-րդ դարի նշանավոր հայ բանաստեղծ, որը հեղինակ է մի երաժշտական ստեղծագործության: 3. «Լեռնի վիշտը»*



*լիրիկական պոեմի հեղինակը: 4. «Ռուս մարդիկ» պիեսի հեղինակը: 5. 19-րդ դարի ռուս խոշոր վիպասան: 6. Սովետական անվանի վիպասան, որի ստեղծագործություններից շատերը նկարվել են կինոէկրանի համար: 7. Ֆրանսիական անվանի նովելիստ: 8. Արևմտահայ երգիծաբան, որը հրատարակեց «Մեղու» և «Ծիկար» երգիծական թերթերը: 9. Կոլեկտիվացման թեմայով գրված վեպ: 10. Ամերիկահայ ժամանակակից նշանավոր գրող: 11. Հայ բանաստեղծ, որը գրականության մեջ հայտնի դարձավ մի նշանավոր բանաստեղծությամբ: 12. Դանթեի գործերից:*

*Լրացնելով խաչբառի 1—12 կիսաշրջան վանդակները և համարակալված փոքր շրջանակների տառերը տեղադրելով իրենց համարներին համապատասխան կենտրոնի փոքր շրջանակների մեջ, ժամացույցի սլաքի ուղղությամբ դուք կկարդաք հայ խոշոր բանաստեղծներից մեկի ազգանունը:*

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## Պատասխանում ենք

### „ՊԻՈՆԵՐ" № 1

### «ԽԱՉԲԱՌ-ԳԱՂՏՆԱԳԻՐ»

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ — 1. Կանիրե: 2. Արաքս: 3. Բայկալ: 5. Ցեյլոն: 7. Բոստոն: 11. Մելբուռն: 12. Մագադան: 21. Կոլիմա: 22. Մարսել: 26. Դոնբաս: 27. Անգլիա: 32. Օխոտի:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ — 1. Մալայան: 8. Պեչորա: 9. Կանտոն: 13. Նեապոլ: 15. Կովկաս: 17. Կուբան: 19. Ադանա: 23. Հռենոս: 24. Բալխաշ: 28. Ամազոն: 30. Ենիսեյ: 34. Ճապոնիա: Գաղտնագիր—Միկլուխո Մակլայ:

### «ԿԱԶՄԵՑԵՔ ԻՆՔՆԵՐԴ»

1. Ռիզա: 2. Սենա: 3. Նիգեր: 4. Սանա: 5. Կոլա: 6. Լագոս: 7. Լիմա: 8. Գանա: 9. Միլան: 10. Լենա: 11. Կամա: 12. Նեման:

### «ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ 4 ՏԱՌԻՑ»

1. Դհոլ: 2. Լիստ: 3. Վալս: 4. Երազ: 5. Աիդա: 6. Տրիո: 7. Արիա: 8. Սոնա: 9. Բիզե: 10. Ազրա: 11. Ադան: 12. Ասյա:







## ԵՐԿՈՒ ՀԵԾՅԱԼ

*Լուսանցքի նկարը, որտեղ մարդիկ են պատկերված, կտրեք և համապատասխանեցրեք ձիերի վրա այնպես, որ ստացվի երկու հեծյալ:*

